

ՀՈՒՆԻՍ
№ 6
1955 թ.

# ՊԻՈՆԵՐ

# ԸՆԿԵՐ ՆԻԿՈԼԱՅ ԱԼԵՔՍԱՆԴՐՈՎԻՉ ԲՈՒԼԳԱՆԻՆԻՆ

*Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեն և ՍՍՌ Միության Մինիստրների Սովետը ջերմորեն ողջունում են Ձեզ, Լենինի հավատարիմ աշակերտին ու Ստալինի զինակցին, Կոմունիստական պարտիայի և Սովետական պետության ականավոր գործչին՝ Ձեր վաթսունամյակի օրը:*

*Կոմունիստական պարտիան և սովետական ժողովուրդը բարձր են գնահատում Ձեր ծառայությունները Սովետական պետության շինարարության և սոցիալիստական ինդուստրացման համար մղված պայքարում, ֆաշիստական զավթիչների դեմ հաղթանակի հասնելու համար մղված պայքարում և մեր Հայրենիքի տնտեսական ու պաշտպանական հզորության ամրապնդման համար մղվող պայքարում:*

*Պարտիական ու պետական գործունեության բոլոր պոստերում Դուք անխոնջ եռանդով և բարձր սկզբունքայնությամբ Ձեր բոլոր ուժերը նվիրաբերում եք կոմունիզմի կառուցման մեծ գործին:*

*Ամբողջ սրտով ցանկանում ենք Ձեզ, մեր բարեկամ ու ընկեր, մեր թանկագին Նիկոլայ Ալեքսանդրովիչ, քաջառողջություն և հետագա բեղմնավոր աշխատանքի երկար տարիներ՝ ի բարօրություն Սովետական Միության ժողովուրդների, ի բարօրություն կոմունիզմի:*

Սովետական Միության Կոմունիստական Պարտիայի Կենտրոնական Կոմիտե

ՍՍՌ Միության Մինիստրների Սովետ

## ՍՍՌՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ

## ՀՐԱՄԱՆԱԳԻՐԸ

### ԸՆԿԵՐ Ն. Ա. ԲՈՒԼԳԱՆԻՆԻՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՀԵՐՈՍԻ ԿՈՉՈՒՄ ՇՆՈՐՀԵԼՈՒ ՄԱՍԻՆ

*ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահ ընկեր Ն. Ա. Բուլգանինի ծննդյան վաթսունամյակի կապակցությամբ և նշելով Կոմունիստական պարտիային ու սովետական ժողովրդին նրա մատուցած աչքի ընկնող ծառայությունները, ընկեր Նիկոլայ Ալեքսանդրովիչ* Բուլգանինին *շնորհել* Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի *կոչում, նրան հանձնելով* Լենինի *շքանշան և* «Մուրճ ու մանգաղ» *ոսկե մեդալ:*

ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Նախագահ՝

Կ. ՎՈՐՈՇԻԼՈՎ

ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Քարտուղար՝

Ն. ՊԵԳՈՎ

*Մոսկվա, Կրեմլ*
*10 հունիսի 1955 թ.*




Կոմունիստական պարտիայի գործի պայքարին եղի՛ր պատրաստ

№ 6

ՀՈՒՆԻՍ

1955 Թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 27-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

ՆԻԿՈԼԱՅ ԱԼԵՔՍԱՆԴՐՈՎԻՉ ԲՈՒԼԳԱՆԻՆ

# ՆՐԱՆՑ ԿԱՆՉՈՒՄ Է ԱՊԱԳԱՆ

Հունիսի մեկը երեխաների պաշտպանության միջազգային օրն է: Այդ օրը ավելի բարձր է հնչում աշխարհի խաղաղասեր մարդկանց ձայնը երեխաների պաշտպանության համար... Ոսկեգանգուր մանուկները հարավի արևի շողերի տակ զրնգուն ճիչ ու աղմուկով վազում են դեպի կապուտակ ծովը, նետվում սառը ալիքների մեջ... Ցայտում են ջրի անթիվ-անհամար կաթիլները: Մանուկները սուզվում են ալիքների մեջ, խայտում, խաղում նրանց հետ, ինչպես ծովի մեջ թափվող արևի ճառագայթները:

Ուրա՜խ, առո՜ղջ, կենսախի՜նդ են մանուկները «Արտեկ» պիոներական ճամբարում: Այդպես են սովետական բոլոր երեխաները, մեր մեծ երկրի բոլոր երեխաները, որոնք մեր ուրախությունն են, մեր հույսը, մեր ապագան:

Այդպես է մեր աճող սերունդը: Բայց մտքով մի պահ տեղափոխվենք Իտալիա՝ երաժշտության ու ծաղիկների հայրենիքը: Միլանը հրաշալի քաղաք է: Արևն այնքան պայծառ է այնտեղ լուսավորում, այնքան մոտ է թվում, որ կարծես կարող ես ձեռքդ երկարել ու բռնել նրան: Արևը շոյում է թանգարանների մարմարե սյուները, փայլփլում տաճարների գմբեթներին, շողշողուն հայելու պես փշրվում Նավիլիոյի ջրանցքի հստակ ջրերում: Քայլենք առաջ, քայլենք Մոնտոնեապոլեոնե շքեղ փողոցի գեղեցիկ առանձնատների մոտով: Այստեղ ապրում են հարուստները: Հապա մտեք այն նեղ ու ծուռ փողոցները, որտեղ աշխատավորներն են ապրում: Իրար հենված խղճուկ խրճիթներ, խուլ, մութ նրբանցքներ, խոնավություն... Արևն այստեղ չի շոյում թոքախտավոր, վտիտ Բեպպոյի դալուկ դեմքը...

Այսպես, սովից, լույսի պակասից մեռնում են հազարավոր, միլիոնավոր երեխաներ այն աշխարհում, որտեղ մարդկանց ուսերին ծանրանում է կապիտալի լուծը: Մանկության օրերին անգամ նրանք որոնում ու չեն գտնում իրենց մանկությունը, չեն զգում նրա հրապույրները, չեն ծիծաղում լիաթոք, ինչպես որ ծիծաղում են մեր, Չինաստանի, ժողովրդական դեմոկրատիայի մյուս երկրների երջանիկ երեխաները: Կապիտալիստական երկրներում երեխաները փոքր հասակից ընկնում են կյանքի հորձանուտը: Աֆրիկայում նույնիսկ վեց տարեկանները ծանր աշխատանք են կատարում: Կոպեկներով իրենց մանկությունն են վաճառում երեխաները Չիկագոյի ու Դետրոյտի գործարաններում, Տեննեսիի ֆաբրիկաներում, Տեխասի պլանտացիաներում, անգլիական նավահանգիստներում, Ավստրալիայի հետնախորշերում...

Երեխաներին անհրաժեշտ է խաղաղություն, կյանք, երջանկություն... Սրա համար են պայքարում աշխարհի բոլոր ժողովուրդները, բոլոր հայրերն ու մայրերը:

Սակայն աշխարհում կան մարդիկ, որոնց խիղճը սև է, սիրտը չոր ու սառը: Նրանց՝ կապիտալիստներին, չի հետաքրքրում երեխաների բախտը: Նրանք հարստանալու, մարդկանց սպանելու, նոր պատերազմ հրահրելու մասին են մտածում: Բայց չեն իրականանա նրանց հրեշավոր ցանկությունները: Օրեցօր հզորանում է խաղաղասեր մարդկանց մեծ բանակը, որը գլխավորում է խաղաղության փարոս Սովետական Միությունը:

Չկա այնպիսի ուժ, որը կարողանա խամրել կյանքի ծաղիկը: Մեր երեխաները ծաղկում են, փթթում, մեծանում են երջանիկ ու ապահով: Նրանց են կանչում ամառը, սքանչելի բնությունը, խարույկները: Նրանց կանչում է ապագան:

# ՆՈՐ ԽԱՂԱԼԻՔ



*Գործ՝ Նկ. Ս. ՄՈՒՐԱԴՅԱՆԻ*

# ՎՈԼՈԴՅԱ ՈՒԼՅԱՆՈՎ*

(Հիշողություններ Վ. Ի. Լենինի մանկական և պատանեկան տարիների մասին)

Ն. ՎԵՐԵՏԵՆՆԻԿՈՎ

Նկ. Ա. ԴԱՎԻԴՈՎԱՅԻ

## ՄՈՐԱՔՈՒՅՐ ՄԱՇԱՆ

Մորաքույր Մաշան միջահասակ էր, բայց այնքան վայելչակազմ, որ նույնիսկ խոր ծերության օրերին բարձրահասակ էր երևում։ Խնամքով սանրված թուխ մազերը ժամանակից շուտ էին արծաթազօծվել։ Նրա նուրբ դիմագծերն ու շագանակագույն աչքերը անմոռանալի տպավորություն էին թողնում։

Մարիա Ալեքսանդրովնան օժտված էր աչքի ընկնող ընդունակություններով։ Նա ստացել էր միայն ընտանեկան կրթություն։ Բայց ամուսնությունից հետո, թեև ուներ փոքրիկ երեխաներ ու տնային գործեր, բոլորից աննկատելի պատրաստվեց և հանձնեց ուսուցչի կոչման համար պահանջվող քննությունները։ Նա լավ գիտեր գերմաներեն, ֆրանսերեն, անգլերեն։

Մորաքույր Մաշան բնավորությամբ զուսպ էր, հանգիստ, մեզ՝ երեխաներիս հետ սիրալիր էր և արդարամիտ։ Մենք բոլորս էլ նրան շատ էինք սիրում և ամենից ավելի նրան լսում։

Օժտված լինելով երաժշտական բնատուր ձիրքով, մորաքույր Մաշան սքանչելի նվագում էր դաշնամուր և երգում։ Ասում են, որ դեռևս այն ժամանակ, երբ նա հյուր էր ծնողներիս մոտ՝ Պենզայում, բոլորին հիացրել էր իր երգով ու սիրալիրությամբ։

Կոկուշկինոյում, անձրևային օրերին, մորաքույր Մաշան երեխաներին հավաքում էր դաշնամուրի մոտ և անձրևի միօրինակ աղմուկի տակ պատկերավոր կերպով պատմում Վերստովսկու «Ասկոլդովի շիրիմը» օպերայի բովանդակությունը, պատմությունը լրացնելով երգով ու նվագով։

Ես այնքան վառ եմ հիշում այդ տեսարանը, որ եթե կարողանայի նկարագրել, կվերարտադրեի ավելի մանրամասնորեն։ Վոլոդյան և Օլյան օժտված լինելով երաժշտական բնատուր ձիրքով, ուշադիր լսում էին երգն ու երաժշտությունը։ Փոքրիկ Միտյան ամբողջովին կլանվում էր օպերայի բովանդակությամբ և իր վառվռուն աչքերը չէր հեռացնում մորաքույր Մաշայից։

Անյան և Շուրան, որոնք մեզանից մեծ էին, ժամանակ առ ժամանակ կտրվում էին գրքից կամ միմյանց հետ լուռ զրուցելուց և նույնպես լսում էին։ Մեզ չխանգարելու համար մեծահասակներն աշխատում էին ավելի հանգիստ անցուդարձ անել սենյակում։ Մենք երկար ժամանակ շնչներս պահած նստում էինք և հմայված լսում նրան։ Մորս ու մեծ քրոջս՝ Լյուբայի պատմելով փոքրիկ Վոլոդյայի օրորոցի մոտ մորաքույր Մաշան երգել է մի երգ, որի խոսքերը բոլորին էլ դուր են եկել։ Հիշում եմ, թե ինչպես Կոկուշկինոյում արտասանում ու երգում էինք այդ ռոմանսից առանձին տողեր։ Ահա դրանից մի քանի տող.

…Ի՞նչ է գրված քո ճակատին,
Ի՞նչ է տալու բախտը քեզ.
Պիտի զարդով, սխրանքներով
Աշխարհով մեկ ճոչակվե՞ս,

Դառնաս սիրված, մեծ առաջնորդ
Ու չար ժամին փորձության
Հայրենիքիդ համար լինես
Միշտ հուսալի պահապան:

. . . . . . . . . .

Թե՞ դու կամքով ճակատագրի
Կունենաս խելք զորավոր
Ու շաղ կտաս հոր, պտղաբեր
Մտքի սերմեր բյուրավոր:

Դու անկաշառ, անշահասեր,
Գործի համար սրբազան,
Որպես ուժը ճշմարտության
Կիջնես գլխին բռնության…

Ցավոք սրտի չհաջողվեց իմանալ հեղինակի անունը։

* Սկիզբը «Պիոներ» №№ 4, 5։



digitised by A.R.A.R.@

# ԶԲՈՍԱՆՔՆԵՐԸ

Իլյա Նիկոլայևիչը և մորաքույր Մաշան շատ հաճախ երեխաների հետ գալիս էին անտառ՝ հատապտուղներ և սնկեր հավաքելու։ Իլյա Նիկոլայևիչը կատակով ասում էր. «Հարկավոր է հատապտուղ հավաքել, բայց երեխաներին չկորցնել»։

Գնում էինք տանից մեկ ու կեսից մինչև երկու կիլոմետր հեռու և հասնում գետի բարձր ափին գտնվող սոճիների պուրակը կամ Զերեմիչևոյի սոճիների անտառը, որը կոչում էինք «Լայնեզր գլխարկ»։ Նա երևում էր հեռվից։ Շրջանաձև, մեջտեղը բարձր, ցածր սարոտով այդ անտառը դեղին դաշտերի մեջ ընկած մի վիթխարի լայնեզր գլխարկ էր հիշեցնում։ Գնում էինք նաև «Հետևի» անտառը։ Անցնում էինք ձորակով, մորաքույր Մաշայի սիրած ճանապարհով։ Երեկոները նա այստեղ հաճախ էր զբոսնում։

Զբոսանքի ժամանակ արտասանում էինք սիրելի բանաստեղծներ՝ Նեկրասովի, Պուշկինի, Լերմոնտովի ստեղծագործություններից, խմբով երգում էինք արգելված երգեր, ուսանողական երգեր, «Երյոմուշկայի երգը», «Ստենկա Ռազինի ժայռը» և այլն։

Գյուղամիջով անցնելիս մորաքույր Մաշան սիրալիր զրուցում էր գյուղացիների հետ։ Ամեն տեղ նա վաղեմի ընկերուհիներ ուներ։ Նրանք մորաքույր Մաշային և իմ մորը մտերմաբար ասում էին Մաշենկա և Աննուշկա։

Մորաքույր Մաշան շատ ջերմ վերաբերմունք ուներ նրանց նկատմամբ և միշտ էլ հյուր էր գնում նրանց տները։

Իլյա Նիկոլայևիչը նույնպես հաճախ էր լինում գյուղացիների շրջանում, նստում էր խրճիթների մոտ եղած հողաթմբերին և զրուցում նրանց հետ։

Զբոսանքների ժամանակ մորաքույր Մաշայի պնդումով Իլյա Նիկոլայևիչը վերցնում էր վերարկու կամ ճանապարհորդական վերմակ. նա շուտ էր մրսում։

Մոտակա, այսպես կոչված «Առջևի» անտառը գնալիս մեզ հետ ինքնաեռ էինք տանում։ Այս սաղարթախիտ անտառի բացատում կային մի միայնակ սոճի և երկու վայրի խնձորենի։ Տեղավորվելով այստեղ մենք խարույկ էինք վառում։ Եթե խնձորներ էինք գտնում, ապա կարտոֆիլի հետ խորովում էինք, թեև դրանք ինչպես հում, այնպես էլ եփած վիճակում բոլորովին չէին ուտվում։

Աղբյուրը, որից ջուր էինք վերցնում, բավականին հեռու էր։ Այդ աղբյուրի մոտ գազանաբար սպանել էին անտառապահին՝ կողոպտելու նպատակով։ Դեռևս մնում էին այն երկու ոչ-հաստ չորացած ծառերը, որոնցից մարդասպանները կապել էին դժբախտ անտառապահին։ Սպանության մասին մենք գիտեինք և երբ հարկ էր լինում աղբյուրը ջրի գնալ, նույնիսկ ավելի չափահասները մի անբացատրելի, սնոտիապաշտական վախ էին



Գնում էինք տանից... հեռու...

զգում։ Բայց Վոլոդյային խորթ էին ամեն տեսակի սնոտիապաշտությունները, և նա համարձակորեն առաջարկում էր ջրի գնալ։

— Մի՞թե դու չես վախենում,— հարցնում էինք նրան։

— Ինչի՞ց։

— Սպանված անտառապահից։

— Անհեթեթություն է։ Մեռածից ինչո՞ւ պիտի վախենամ։

Այն ժամանակ Վոլոդյան շատ էր սիրում գործածել «անհեթեթություն» բառը։ Եթե որևէ մեկը նրա կարծիքով դատարկ, անմիտ բաներ էր ասում, նա կարճ ու կտրուկ ասում էր՝ «անհեթեթություն

էս։ Ես այն ժամանակ այդ բառը ուրիշ ոչ ոքի բերանից չէի լսում։

Մանկական տարիներին Վոլոդյայի արտասանության մեջ «ռ» հնչյունը դղրդում էր, կարծես թե կրկնակի էր հնչում։ Տարիներ հետո «ռ» հնչյունի կարճ արտասանությունը գնալով ավելի ու ավելի էր կոկվում։

Իլյա Նիկոլայևիչը նույնպես ճիշտ չէր արտասանում այդ հնչյունը, բայց այլ կերպ. Նրա արտասանության ժամանակ «ռ» հնչյունը կարծես թե չէր լսվում։

Մենք նստում էինք մինչև ուշ գիշեր և այդ պատճառով չէինք սիրում առավոտ շուտ վեր կենալ. բայց շատ նստելը հաճելի էր։

Երեկոյան քաղց զգալով Վոլոդյան ասում էր.

— Ես գայլի պես քաղցած եմ. գնանք մի բան ուտելու։

Եվ մենք գնում էինք «Առաջին» տան մոտի ձորակը, որտեղ առատորեն աճում էին մորի և հաղարջ։ Հատապտուղները խժռում էինք ուղղակի թփերից և հետո վրայից հաց ուտում։

## ԻԼՅԱ ՆԻԿՈԼԱՅԵՎԻՉԸ

Իմ կարծիքով Իլյա Նիկոլայևիչի լուսանկարները լավ են արտահայտում նրա դեմքը։ Նա բարձրահասակ չէր, նիհար էր, շատ արագաշարժ, շագանակագույն արտահայտիչ աչքերով և կենսախինդ ժպիտով։

Իլյա Նիկոլայևիչը շուտ էր վեր կենում և մենակ գնում էր լողանալու։ Մենք շատ էինք սիրում ուղեկցել նրան։ Բայց լողարանը վատն էր և երեխաների բազմության ծանրության տակ տախտակամածը սուզվում էր և թրջում մեր զգեստներն ու կոշիկները։ Ահա թե ինչու նա աշխատում էր վաղ գնալ, առանց մեզ, չնայած երեխաներին շատ էր սիրում։

Նա հաճախ պատմում էր Մ. Ե. Սալտիկով-Շչեդրինի երգիծական ստեղծագործություններից, կատակում և երգում էր։ Իլյա Նիկոլայևիչի կատակների վրա մենք սրտանց քրքջում էինք և խանդավառ ճիչեր արձակում։

Կատակներ սիրելու հետ մեկտեղ Իլյա Նիկոլայևիչը մեզ երբեք թույլ չէր տալիս ծիծաղել մարդկանց վրա։

Հիշում եմ այսպիսի մի դեպք։

Կոկուշկինոյում բաց էինք թողնում ինքնաշեն հրթիռներ, որոնք թռչում էին շատ բարձր։ Եվ ահա այդ ժամանակ ներկա գտնվող ծանոթներից մեկը, որն իրեն կուլտուրական և կրթված մարդ էր համարում, Իլյա Նիկոլայևիչին դիմեց այսպիսի հարցով.

— Ես կարծում եմ, որ բարձր թռչող այդ հրթիռներից մի քանիսը կարող են հասնել մինչև աստղերը։ Դու ի՞նչ կասես։

Այս խոսքերը լսելով մի մարդուց, որն իր մասին մեծ կարծիք ուներ, մենք՝ երեխաներս, փռթկացրինք, բայց Իլյա Նիկոլայևիչը հայացքով ընդհատեց մեր անհարգի ծիծաղը և պարզ կերպով նրան բացատրեց այդպիսի ենթադրության ամբողջ անհեթեթությունը։

Հետո, երբ այդ մարդը գնաց, Իլյա Նիկոլայևիչը շատ մեղմ ու սիրալիր բացատրեց մեր ծիծաղի անտեղի լինելը, ասելով, որ չի կարելի ծիծաղել մարդու անգիտության վրա և արհամարհել ու անպատվել նրան։

Իլյա Նիկոլայևիչն այս խրատը կարողացավ անել այնպիսի ձևով, որ դա մեզանից ոչ ոքի չվիրավորեց և ամբողջ կյանքում մնաց մեր հիշողության մեջ։

## ՎՈԼՈԴՅԱՅԻ ԾԻԾԱՂԸ

Չնայած Վոլոդյան և Իլյա Նիկոլայևիչը ծիծաղում էին միանման՝ սրտաբուխ, անկաշկանդ ու վարակիչ, բայց նրանց ծիծաղների մեջ խիստ տարբերություն կար։ Իլյա Նիկոլայևիչին կարծես թե ծիծաղը հաղթում էր։ Նա չէր կարող դադարեցնել և ծիծաղում էր անարգել, երբեմն մինչև արտասվելը։ Ծիծաղելիս նա պաշտպանվում էր ձեռքերով, թեկուզ դրանք զբաղված լինեին հովանոցով, ձեռնափայտով կամ սունկով լի զամբյուղով և այլն։

Վոլոդյան էլ քրքջում էր գրավիչ ու սրտաբուխ. բայց կարծես թե տիրապետում էր ծիծաղին։ Նա կարող էր միանգամից կտրել ծիծաղը և, նայած հանգամանքներին, անցնել լուրջ խոսակցության։

Մի անգամ երեկոյան զբոսնում էինք մարգագետնում։ Երկար թափառելուց հետո պառկեցինք խոտի կիսատ դեզի վրա։ Մեզ հետ էր նաև մյուս մորաքրոջս տղան։ Հայացքը երկնքին հառելով, նա դանդաղ, ծոր տալով բառերը, հանպատրաստից շատ հուզիչ մի բան հորինեց գիշերվա, երկնքի, աստղերի մասին...

— Դու ո՞ր լեզվից թարգմանեցիր դա,— հարցրի ես շինծու լրջությամբ։

Վոլոդյան բարձր ծիծաղեց։ Անհաղթահարելի թվացող այդ քրքիջին միացա նաև ես։ Արտասանողն սկզբում բարկացավ երկուսիս վրա էլ, բայց

*վերջացրեց նրանով, որ ինքն էլ սկսեց ծիծաղել։*

*Վոլոդյան այնպես վարակիչ էր ծիծաղում, որ գրավում էր նույնիսկ նրանց, ում վերաբերում էր այդ ծիծաղը։*

*Անսպասելիորեն, մի անգամից կտրելով ծիծաղը, Վոլոդյան ասաց.*

*— Քո տաղտկալի արտասանությունն ինձ հիշեցրեց, թե ինչպես դասի ժամանակ սպասելով հուշելուն, այնպես են ծոր տալիս գերմաներենից դժվար կատարվող թարգմանությունը, կարծես թե ծանր բեռ են բարձրացնում սարը։*

*Ծիծաղից դեպի լուրջ խոսակցության այսպիսի կտրուկ անցումը այն ժամանակ շատ բնորոշ էր Վոլոդյայի համար։ Բայց այդ անակնկալ անցման մեջ արհեստականության կամ գիտավորության հետք անգամ չկար։*

## «ՄԵՆԱՄԱՐՏԸ»

*Կեչիների պուրակի բացատում Վոլոդյան ըմբշամարտի բռնվեց իրենից մեկ տարով մեծ և ամբողջ գլխով բարձր մի տղայի հետ, որը պարծենալով հայտարարում էր, թե իրեն ոչ ոք չի հաղթել։ Ձեռքերով բռնելով միմյանց, նրանք սկսեցին մենամարտը։ Հանկարծ Վոլոդյայի ախոյանը նրան ոտք գցեց։ Վոլոդյան ընկավ։ Խաղընկերը գլորվեց նրա վրա։ Բայց հենց այդ ժամանակ նա ճկույն վեր թռավ տեղից և հաղթողի հանդիսավոր տեսք ընդունելով բացագանչեց.*

*— Ես հաղթեցի։*

*Ազնիվ պայքարում նրան անթույլատրելի ոտք գցելուց վրդովված, որպես դիտորդ ես ասացի, որ հարկավոր է վերսկսել մրցումը։ Վոլոդյայի հակառակորդը բավականին անհարմար, բայց արտակարգ դյուրաբորբոք կերպով սկսեց արդարանալ, ասելով, թե ինքը Վոլոդյային ոտք չի գցել։*

*Արհամարհելով նրա արդարանալու փորձերն ու իմ հարձակումները, և անկեղծորեն համոզված իր իրավացի լինելու մեջ, Վոլոդյան բոլորովին այլ կերպ դրեց հարցը, ասելով, որ ընկնելիս վերևում լինելը դեռևս քիչ է. պետք է կարողանալ պահել այդ դրությունը. չէ՞ որ կարելի է տակից վեր դուրս գալ։*

*— Ճիշտ է, ես գլորվեցի գետին,— ասաց Վոլոդյան,— բայց հետո նա կարող էր լինել ներքևում։*

*— Հետո, բայց ե՞րբ,— հարցրի ես,— այդ դեպքում հարկավոր է որոշել ժամանակը։*

*Համաձայնվեցինք դանդաղ հաշվել մինչև հարյուր. և եթե նա, ով վերևում էր, կկարողանա այդպես մնալ մինչև հաշվի վերջը, նա կհամարվի հաղթող։*

*Մենամարտը շարունակեցին։ Հակառակորդը նորից ոտք գցեց։ Վոլոդյան նորից ներքև ընկավ, բայց շատ արագ դուրս եկավ տակից և վերևում մնաց մինչև հարյուրը հաշվելը։*

*Հարկավոր էր տեսնել պարտվածի շփոթված ու վհատ կերպարանքը։*

*Խոչընդոտները Վոլոդյային երբեք ետ չէին կանգնեցնում։ Անհաջողությունները միայն գրգռում էին նպատակին հասնելու ձգտումը։*

*Գործին, ընթերցանությանը, կամ նույնիսկ խաղերին ամբողջովին նվիրվելը Վոլոդյայի բնավորության գիծն էր։*

*Երեխաներս երբեմն ձանձրույթից տանջվում էինք, երբ չէինք իմանում ուր գնալ, ինչով զբաղվել... Վոլոդյայի մոտ այդպիսի վիճակ երբեք չէր նկատվում. նա միշտ էլ կլանված էր լինում որևէ բանով։ Վոլոդյայի ներկայությամբ մենք երբեք անմիտ բաներով չէինք զբաղվում։ Նրա եռուն բնավորությունը թույլ չէր տալիս դա։ Նա զվարճացնում ու գրավում էր մեզ։*

(Շարունակելի)

## ՆՈՒՌՆ ԱՆՈՒՇԻԿ

*ՄԻՔ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

Մեր տան դռան
Մոտ կա նռան.
Ծաղիկ ունի
Կարմիր գույնի.

Տերևը նեղ,
Փշերն՝ ասեղ,
Կարմրաբուշիկ
Նուռն անուշիկ։

Ով ուզենա
Նուռ ունենալ,
Թող նախ տնկի
Նռան տնկի։

# ՉԱՐԱԲԱՍՏԻԿ ՀԵՐՈՍՈՒԹՅՈՒՆ

*Պիես՝ մեկ գործողությամբ, երկու պատկերով*

ՀՐ. ՂԱՓԼԱՆՅԱՆ

Նկ. Հ. ՂԱԶԱՐՅԱՆԻ

### ԳՈՐԾՈՂ ԱՆՁԻՆՔ

**Ռուբիկ, Նազիկ, Հրայր՝** *հինգերորդ դասարանի աշակերտներ*

**Սուրիկ՝** *չորրորդ դասարանի աշակերտ*

## ՊԱՏԿԵՐ ԱՌԱՋԻՆ

Տաղկազարդ բակ: Դիմացից երևում է բնակելի մեծ շենքի շքամուտքը: Աջ կողմը՝ էլեկտրական լապտերի սյուն, որի տակ՝ նստարան: Ձախ կողմը՝ մեծ գետ: Հեռվից լսվում է ռադիոյով հաղորդվող մի հանեի եղանակ: Բեմ է գալիս 4-րդ դասարանցի Սուրիկը, ձեռքին բղբից պատրաստած աղավնիներ: Հակառակ կողմից գալիս է Նազիկը:

ՆԱԶԻԿ.— (Նկատելով Սուրիկին). *Ռուբիկին չե՞ս տեսել։*

ՍՈՒՐԻԿ.— *Չէ, դեռ տուն չի եկել։*

ՆԱԶԻԿ.— *Ի՞նչ գիտես, թե տուն չի եկել։*

ՍՈՒՐԻԿ.— *Ո՞նց թե. Ռուբիկը որ տուն է գալիս, ամբողջ բակն իրար է խառնվում։*

ՆԱԶԻԿ.— *Լավ է, որ չի եկել. ես հենց հիմա կգնամ նրա մոր մոտ...*

(Նազիկը արագ գնում է դեպի շքամուտքը: Սուրիկը թղթե աղավնիները թողնելով նետում է հակառակ կողմը: Ներս է մտնում Ռուբիկը պայուսակը ձեռքին: Նրա տրամադրությունը շատ ընկած է):

ՍՈՒՐԻԿ.— (Մոտենալով նրան). *Բարև, Ռուբի՛կ։*

ՌՈՒԲԻԿ.— (Տխուր). *Բարև Լևի, Սուրի՛կ...* (Սուրիկը հետաքրքրված մոտեցավ նրան): *Ի՞նչ կարծիքի ես՝ չգնա՞մ խոպան հողերը...*

ՍՈՒՐԻԿ.— *Էլի երեկ երկուս ես ստացե՞լ...*

ՌՈՒԲԻԿ.— (Զայրացած). *Զա՛յնդ։ Ես քեզ ընկերոջ տեղ եմ դնում, լուրջ խորհուրդ եմ հարցնում, իսկ դու...*

ՍՈՒՐԻԿ.— *Ի՞նչ կարող ես անել խոպան հողերում. դու այնտեղ ավելորդ ես...*

ՌՈՒԲԻԿ.— *Էլի՞...* (Զսպված). *Լսիր, քանի՞ տարի է, ինչ մի շենքում ենք ապրում, իսկ դու, ինչպես երևում է, ինձ դեռ չես ճանաչում։*

ՍՈՒՐԻԿ.— (Զարմանքով). *Ինչպե՞ս չեմ ճանաչում... լավ եմ ճանաչում... քեզ ո՞վ չի ճանաչում։*

ՌՈՒԲԻԿ.— *Ճանաչո՞ւմ ես... Հասկացիր՝ ես հերոսությունների համար եմ ծնվել։ Իսկ այստեղ դպրոց գնա, դաս պատրաստիր, շարունակ նույնը և նույնը։*

ՍՈՒՐԻԿ.— *Ա՛յ, ես մի գիրք եմ կարդացել. այնտեղ գրված է, որ հերոսը պետք է կամք ունենա, իսկ կամքը դաստիարակվում է ուսման և...*

ՌՈՒԲԻԿ.— *Էլի սկսեցիր... Չեմ սիրում, երբ ինձ սովորեցնում են...*

ՍՈՒՐԻԿ.— *Իսկ սովորելը վա՞տ է ինչ է, իսկ ես...*

ՌՈՒԲԻԿ.— *Նորի՞ց... ի՞նչ լեզվանին ես եղել։*

ՍՈՒՐԻԿ.— (Հանկարծ վեր թռչելով). *Հա՜, մոռացա, Նազիկը, նոր, Նազիկը...*

ՌՈՒԲԻԿ.— (Անհանգստացած). *Ի՞նչ Նազիկը...*

ՍՈՒՐԻԿ.— *Նոր քեզ էր հարցնում։*

ՌՈՒԲԻԿ.— (Ջղայնացած և հուզված). *Ի՞նչ էր ուզում։*

ՍՈՒՐԻԿ.— (Վախեցած). *Ախր ինչո՞ւ ես ինձ հարցնում, գնա նրան հարցրու։*

ՌՈՒԲԻԿ.— *Հետո, հետո էլ ի՞նչ ասաց...*

ՍՈՒՐԻԿ.— *Հա՜...* (Խորհրդավոր). *Ես լսեցի, թե ինչպես նա ասաց՝ Ռուբիկը տանը չի՞...*

ՌՈՒԲԻԿ.— *Հետո՞...*

ՍՈՒՐԻԿ.— *Ես էլ ասացի՝ ոչ. իսկ նա, թե՝ ավելի լավ. ես էլ կգնամ նրա ծնողների հետ կխոսեմ...*

ՌՈՒԲԻԿ.— *Տես է, տես է...*

ՍՈՒՐԻԿ.— *Ի՞նչ ես արել Ռուբիկ. երևի մազերն ես քաշել, հա՞։*

ՌՈՒԲԻԿ.— *Հիմար-հիմար մի՛ խոսիր, պա՞րզ է։*

ՍՈՒՐԻԿ.— *Պարզ է. սրանից հետո խելոք-խելոք կխոսեմ... քեզ նման։*

ՌՈՒԲԻԿ.— *Լսիր, դու ինձ ձեռք ես առնո՞ւմ...*

ՍՈՒՐԻԿ.— *Ե՞ս... ես ո՞նց կարող եմ քեզ ձեռք առնել։*

ՌՈՒԲԻԿ.— (Մտքերի հետ). *Հիմա կգնա, ամեն-պակաս կխոսի, հետո հայրիկը կգա... ամեն ինչ փչացավ, ամեն ինչ կորավ...*

ՍՈՒՐԻԿ.— *Ի՞նչը կորավ, Ռուբի՛կ...*

ՌՈՒԲԻԿ.— *Հեծանիվը, հեծանի՜վը...*

ՍՈՒՐԻԿ.— *Ի՞նչ հեծանիվ։*

ՌՈՒԲԻԿ.— *Հայրիկս խոստացել է իմ ծննդյան օրը, այսինքն վաղը հեծանիվ առնել. իսկ Նազիկը հիմա կգնա, կպատմի, որ նորից երկուս եմ ստացել և...*

ՍՈՒՐԻԿ.— *Տեսնո՞ւմ ես. իսկ դու ասում էիր, թե ես հիմար-հիմար եմ խոսում։*

ՌՈՒԲԻԿ.— *Դե՛, լավ դու էլ... ի՞նչ անել... հետո գործն ավելի կբարդանա, հայրիկը կգա դպրոց դիրեկտորի մոտ... կորավ, կորավ ամեն ինչ... ի՞նչ անել...*



ՍՈՒՐԻԿ.— (Ոգևորված). *Գիտես ինչ արա։* (Պաուզա): *Գնամ Նազիկին կանչեմ, համոզիր, որ այսօր չասի, թող ասի վաղը չէ մյուս օրը։ Հը՞...*

ՌՈՒԲԻԿ.— *Իսկ ինչո՞ւ վաղը չէ մյուս օրը։*

ՍՈՒՐԻԿ.— (Խորամանկորեն). *Չէ՞ որ հայրիկդ հեծանիվը վաղը պետք է առնի...*

ՌՈՒԲԻԿ.— *Չէ, Նազիկն այդպիսիներից չէ, որ շուտ համոզես...*

ՍՈՒՐԻԿ.— *Ասենք ճիշտ է, դպրոցում Նազիկին բոլորը հարգում են։*

ՌՈՒԲԻԿ.— *Հարգո՞ւմ են... Նա ի՞նչ է որ. միայն սովորել գիտե... Ա՛յ, մի հրդեհ լիներ՝ տեսնեինք ո՞վ կնետվեր կրակի մեջ երեխա ազատելու, հ՞ս, թե նա...*

ՍՈՒՐԻԿ.— *Ո՛ւ, նա էլ պակասը չէ, անցյալ օրը...*

ՌՈՒԲԻԿ.— (Հանկարծ ոգևորված վեր է թռչում). *Դո՞ւ, դո՞ւ իմ փրկարարն ես, Սուրի՛կ։* (Դիկում է նրան): *Ասա, կուզենայի՞ր ինձ օգնել, հը՞, Սուրի՛կ ջան. դե՛, ասա, ասա...*

ՍՈՒՐԻԿ.— *Փրկե՞լ, ինչո՞վ փրկեմ. բա ես կարող ե՞մ։*

ՌՈՒԲԻԿ.— (Ավելի ջերմ և ոգևորված). *Կարող ես, դու կարող ես... Միտք ծագեց՝ ես քո պատճառով հերոս կդառնամ և ինձ կներեն, աղնիվ խոսք։ Ասա, կօգնե՞ս ինձ...*

ՍՈՒՐԻԿ.— *Եթե կարողանամ՝ կօգնեմ...*

ՌՈՒԲԻԿ.— (Ոգևորված և խորհրդավոր). *Հենց հիմա գնանք գետափ...*

ՍՈՒՐԻԿ.— *Ինչո՞ւ։*

ՌՈՒԲԻԿ.— *Լսիր, մի՛ ընդհատիր։ Գնանք գետափ. ես հեռու կկանգնեմ, դու քեզ կգցես ջուրը և կսկսես աղմկել, օգնության կանչել. իբր թե խեղդվում ես... Երբ մարդիկ կհավաքվեն, ես անմիջապես կնետվեմ ջուրը և քեզ կազատեմ...* (Ուրախացած) *Իսկ վաղը թերթերը կգրեն իմ մասին, թե ինչպես պիոներ Գալստյանը փրկեց Սուրիկ Նազարյանին և...*

ՍՈՒՐԻԿ.— *Սպասիր, սպասիր, մի՛ ոգևորվիր. չէ՞ որ ես լող տալ գիտեմ ու ինքս էլ կարող եմ ազատվել...*

ՌՈՒԲԻԿ.— *Դա ինչ կարևոր է. դու կձևացնես, թե խեղդվում ես, պա՞րզ է։ Դե, համաձայնվիր. ընկեր ես, չէ... Քո անունն էլ կպատմվի քաղաքով մեկ, բերնե բերան կանցնի՝ Սուրիկ Նազարյան, Սուրիկ Նազարյան...*

ՍՈՒՐԻԿ.— *Այդպես հերոսանալն ինձ պետք չէ. մեր դասարանում բոլորը կծիծաղեն, կասեն ամոթ քեզ, լող տալ չգիտես... չէ, չէ, չեմ ուզում։*

ՌՈՒԲԻԿ.— (Հիասթափված). *Բայց ընկերոջդ ես փրկում, նեղ տեղից ազատում ես։*

ՍՈՒՐԻԿ.— *Ավելի լավ չէ՞ր լինի երկուսներդ ուղղեիր. ախր մի կողմից էլ վախենում եմ, հանկարծ հույսս դնեմ քեզ վրա, լող չտամ, դու էլ ուշանաս ու խեղդվեմ...*

ՌՈՒԲԻԿ.— *Վախկո՛տ... Մի՞թե Ռաֆիկ Ցուրկինն այդպես կվարվեր Սերգեյ Տյուլենինի հետ. ոչ։ Նա կասեր՝ ընկերոջ համար կնետվեմ կրակի, բոցի, ջրի մեջ... Իսկ ես քեզ խնդրում եմ միայն ջրի մեջ նետվել, այն էլ մեր գետը...*

ՍՈՒՐԻԿ.— *Ախր գրանից ի՞նչ օգուտ, է՞...*

ՌՈՒԲԻԿ.— (Ուրախացած). *Օգուտն այն է, Սուրի՛կ ջան, որ բոլորը՝ և՛ Նազիկը, և՛ ծնողներս, և՛ ուսուցիչները... Բոլորը, բոլորը կլսեն, կծիծաղեն և ինձ կներեն: Իսկ հետո կսովորեմ, աղնի՜վ խոսք. միայն՝ խնդրում եմ քեզ, փրկիր ընկերոջդ...*

ՍՈՒՐԻԿ.— (Մտածելուց հետո). *Դե՜, ի՞նչ արած. ընկերոջ համար կարելի է:* (Հպարտ): *Գնանք՝ հերոսացիր, Ռուբի՛կ:*

ՌՈՒԲԻԿ.— (Ոգևորված). *Գնանք, Սուրի՛կ ջան, գնանք. տասը րոպեից հետո անունս կթնդա քաղաքով մեկ:*

(Նրանք արագ հեռանում են: Բեմը մի պահ դատարկ է: Ծառերի միջից գալիս է Նազիկը և հանդիպում է Հրայրին):

ՀՐԱՅՐ.— *Հը՞, խոսեցի՞ր Ռուբիկի ծնողների հետ.*

ՆԱԶԻԿ.— *Ոչ:*

ՀՐԱՅՐ.— *Ինչո՞ւ:*

ՆԱԶԻԿ.— *Ինձ թվում է՝ առայժմ խոսելու հարկ չկա:*

ՀՐԱՅՐ.— *Ինչո՞ւ հարկ չկա, ինչո՞ւ... Դու է՞լ ես կողմնապահություն անում: Բոլորդ մի շենքում եք ապրում և դու չես ուզում վատամարդ դառնալ, կամ վախենում ես:*

ՆԱԶԻԿ.— (Հուզված). *Չես ամաչո՞ւմ, Հրա՛յր:*

ՀՐԱՅՐ.— *Լավ, չես ուզում՝ ես ինքս կգնամ և կխոսեմ նրա ծնողների հետ: Բավական է: Նրա պատճառով մեր ջոկատը դպրոցում խայտառակվում է, իսկ մենք լռե՞նք, այո՞:*

ՆԱԶԻԿ.— (Հանգիստ). *Ո՛չ, պետք չէ լռել... Բայց կարիք էլ չկա հիմա ծնողներին ասել: Իսկ մենք, մենք ի՞նչ ենք արել...*

ՀՐԱՅՐ.— *Ի՞նչ պիտի անենք, նա մեզ երբ է լսում որ...*

ՆԱԶԻԿ.— *Մեկր հասկացիր, չէ՞ որ մենք էլ կարող ենք նրան օգնել, ուղղել. երբ չկարողացանք, այն ժամանակ, ես ինքս կխոսեմ նրա ծնողների հետ: Եթե մենք զբաղվենք ինչպես հարկն է, ամեն ինչ լավ կլինի...*

(Գետի կողմից լսվում են՝ սուլոց, աղմուկ, աղաղակ. «Օգնեցեք, օգնեցեք, խեղդվեց, օգնեցեք...»):

ՀՐԱՅՐ.— *Սա ի՞նչ է, գետում մարդ է խեղդվում, վազենք...*

(Նրանք վազում են գետափ. աղմուկը շարունակվում է):

Վարագույր

## ՊԱՏԿԵՐ ԵՐԿՐՈՐԴ

Գետափին մի մենավոր ծառ: Հեռվում մեղմանում է աղմուկը և իրարանցումը: Քիչ անց բրչված գալիս են Սուրիկը և Ռուբիկը:

ՍՈՒՐԻԿ.— *Դե՜, դու մի՛ նեղանա. ես բոլորովին էլ չէի ուզում հերոսանալ. առանց դրան էլ դպրոցում գործերս լավ են...*

ՌՈՒԲԻԿ.— (Բարկացած). *Դու մարդ չես:*

ՍՈՒՐԻԿ.— (Զարմացած). *Ա՛յ քեզ բա՜ն. դեռ ես եմ մեղավորը: Ինչպես պայմանավորվել էինք, ես սկսեցի գոռալ, դու նետվեցիր և փոխանակ ինձ ազատես, ինքդ սկսեցիր խեղդվել... դեռ դու պիտի շնորհակալ լինես, որ բռնեցի մազերիցդ և ափ հանեցի...*

ՌՈՒԲԻԿ.— (Վրդովված). *Ամո՜թ, ամո՜թ, խայտառակությո՜ւն... Կարծեմ Նազիկն էլ այնտեղ աչքովս ընկավ...*

ՍՈՒՐԻԿ.— *Հա, իմ աչքով էլ ընկավ...*

ՌՈՒԲԻԿ.— *Գործը փչացավ, ավելի վատացավ...*

ՍՈՒՐԻԿ.— *Մեկր, լավ լողալ սովորիր, հետո մտածիր հերոսության մասին. մենակ լեզվիդ տալ գիտես...*

ՌՈՒԲԻԿ.— (Բարկացած). *Դե, լավ է, իմ խայտառակությունը քիչ է, մի կողմից էլ դու...*

ՍՈՒՐԻԿ.— *Ինչ է, ճիշտ չե՞մ ասում:*

ՌՈՒԲԻԿ.— *Ի՞նչն ես ճիշտ ասում. ես ընկա ջրի ոլորապտույտի մեջ և...*

ՍՈՒՐԻԿ.— *Ի՞նչ ոլորապտույտ, հնարեցիր. այնտեղ ոչ մի ոլորապտույտ էլ չկար, պարզապես գլուխդ կորցրիր, բա որ խեղդվեի՞ր...*

ՌՈՒԲԻԿ.— *Քիչ խոսիր, քիչ խոսիր...*

ՍՈՒՐԻԿ.— *Ինչո՞ւ ես գոռում. շատ հետաքրքիր է. ոնց որ թե դու ինձ փրկած լինես և ոչ թե ես քեզ...*

ՌՈՒԲԻԿ.— *Ուրեմն, որ լավություն ես արել, պիտի երեսովս տա՞ս:*

(Ներս են վազում Նազիկը և Հրայրը):

ՆԱԶԻԿ.— *Այդ ո՞ւր ծլկեցիք. մենք էլ ձեզ ենք փնտրում:*

ՌՈՒԲԻԿ.— (Շատ դժգոհ). *Ինչի՞ համար:*

ՀՐԱՅՐ.— *Ինչպե՞ս թե ինչի:* (Մոտենալով Սուրիկին). *Կեցցես, Սուրի՛կ, փոքրիկ ես, բայց ապրես...*

ՆԱԶԻԿ.— (Սուրիկին). *Ա՛յ, թե դու ինչպիսին ես եղել. ապրես, ուղղակի հերոս ես...*

ՍՈՒՐԻԿ.— (Խնդրագին). *Աղնիվ խոսք, ինձ պետք չէր... Ռուբիկին էր դա պետք... մենք պայմանավորվել էինք...*



ՌՈՒԲԻԿ.— (Տեղից վեր ցատկելով). *Սուրի՛կ...*

ՍՈՒՐԻԿ.— *Այսինքն, ոչինչ էլ չէինք պայմանավորվել... ուղղակի ես պետք է խեղդվեի, նա ինձ պետք է ազատեր, բայց հակառակն ստացվեց։*

ՆԱԶԻԿ.— *Ոչինչ չեմ հասկանում։*

ՍՈՒՐԻԿ.— *Հետո, հետո ամեն ինչ կասեմ... միայն թե, միայն թե...*

ՆԱԶԻԿ.— *Ինչ միայն թե...*

ՌՈՒԲԻԿ.— (Սուրիկին առանձին). *Լռիր դու էլ։*

ՍՈՒՐԻԿ.— (Բարձր, վրդովված). *Ինչո՞ւ լռեմ, ինչո՞ւ լռեմ...* (Նազիկին). *Նազի՛կ, Ռուբիկին անհանգստացնում է...*

ՆԱԶԻԿ.— *Մենք գիտենք, թե նրան ինչն է անհանգստացնում. և ոչ միայն Ռուբիկին, այլև մեզ։*

ՀՐԱՅՐ.— (Ընդհատելով և դիմելով Ռուբիկին). *Մի խոսքով անհարմար պատմություն է ստացվում։ Ախր, քո վատ սովորելու պատճառով մեր ջոկատը բոլորից ետ է մնում։*

ՆԱԶԻԿ.— *Մենք գտնում ենք, որ մենք էլ ենք մեղավոր և որոշել ենք քեզ օգնել։*

ՍՈՒՐԻԿ.— (Ուրախացած). *Տեսնո՞ւմ ես, տեսնո՞ւմ ես... Ի՞նչ լավ եղավ. առանց հերոսության էլ գործը գլուխ եկավ...* (Ռուբիկին). *Դե, ի՞նչ ես լռել, խոսիր է։*

ՆԱԶԻԿ.— *Ռուբի՛կ, վաղվանից արի միասին պարապենք, լա՞վ։*

ՌՈՒԲԻԿ.— (Հուզված ժպտում է). *Լավ, աղնիվ խոսք, լավ...*

ՆԱԶԻԿ.— *Իսկ հիմա գնանք՝ պատմիր մեզ, թե ինչպես պատահեց, որ Սուրիկը քեզ փրկեց...*

ՍՈՒՐԻԿ.— *Դե, ես չփրկեցի նրան, այդ դուք, փրկեցիք նրան, աղնիվ խոսք...*

Վարագույր

# ԱՌԱՋԻՆ ՕՐՎԱՆԻՑ

Տ. ԹԱԹԻԿՅԱՆ

Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ

*Իմ կարծիքով ամեն մարդու մեջ ապրում են բազմաթիվ... ինչպես ասեմ, որ հասկանալի դառնա... բազմաթիվ մտքեր։ Բազմաթիվ անշոշափելի, անտեսանելի էակներ։*

*Չեղավ. չհասկացաք։*

*Ուրեմն, օրինակներով բացատրեմ։ Ո՞վ չի ուզում գերազանցիկ լինել։ Աղնիվ պիոներական, այդպիսի աշակերտ մի հատ էլ չի ճարվի ամբողջ աշխարհում։ Եվ բոլորովին էլ ճիշտ չի, երբ հայրիկս ասում է, թե իմ մեջ լավ սովորելու ցանկություն չկա։ Կրկնում եմ, ճիշտ չի։ Ախր, ինչքա՞ն եմ երազել գերազանցիկ լինել։ Ամեն տարի, սեպտեմբերի մեկին, մտքումս հաստատ որոշում եմ՝ «վերջ. այս տարվանից պիտի բոլոր առարկաներից «5» ստանամ»։ Բայց հենց որ նստում եմ դասերս պատրաստելու, իմ ցանկությունից ու կամքից բոլորովին անկախ, աղնիվ խոսք, բոլորովին անկախ, գլխումս զանազան վնասակար մտքեր են ծնվում։*

*«Գնամ դեռ մի քիչ գնդակ խաղամ...»*

*«Գնամ տեսնեմ Աշոտի լուսանկարչական ապարատը...»*

*«Մի տեսնեմ ինչի վրա են երեխաները այդքան ուրախանում բակում...»*

*Եվ հավատացնում եմ, հենց որ այս վնասակար մտքերից մեկն ու մեկին սխալմամբ հետևում եմ, մինչև օրվա վերջը բոլորովին մոռանում եմ դասը, գրքերը, մոռանում, թե աշխարհում գոյություն ունեն՝ «2», «3», «4», «5» գնահատականներ։ Իսկ հայրիկս ասում է, թե ես ծույլ եմ, լավ*

սովորելու ցանկություն չունեմ։ Լավ սովորելու ցանկություն ես շատ, շատ ունեմ։ Ծուլլն էլ ոչ թե ես եմ, այլ այն վնասակար մարդիկ, որ բնակվում են իմ մեջ։

Բայց դժբախտությունը միայն այդ չի։ Երևի ոչ մի մարդու ներսում այդքան շատ վնասակար էակներ չեն բնակվում, ինչքան իմ մեջ։ Դրանց ձեռքից ես ուղղակի գլուխս կորցրել եմ։

Ասենք՝ ֆիզկուլտուրայի դաս է։ Հենց որ մտնում եմ ձողափայտերին, մեկը ասում է՝ «Ձեռ կարող», մեկը թե՝ «կընկնես», մյուսը թե՝ «վրադ կծիծաղեն»։ Վերջիվերջո ես գլուխս բոլորովին կորցնում եմ։ Ուսուցչի կարգադրությամբ մոտ են վազում ընկերներս։ Օգնում են, որ շարժումը կատարեմ։ Մեկը ոտքերս է քաշքշում, մյուսը գլուխս է բարձրացնում, իսկ ես բոլորովին շփոթված լսում եմ միայն այն վնասակար մարդկանց։

Ֆիզկուլտուրայի դասատուն, իհարկե, չգիտի իմ ներսում գոյություն ունեցող մարդկանց մասին և ասում է.

— Համարձակություն ու վճռականություն չունես։

Մի խոսքով, ի՞նչ երկարացնեմ։

Այս տարի մի կերպ, ինչպես մեր դասղեկ ընկեր Մուրադյանն ասաց, զոռով-զոռով յոթերորդ դասարան փոխադրվեցի։

Հանրահաշվից ու հայոց լեզվից մի-մի հատ կար «3» ստացա ու դասատուներս ասացին, որ ամռան ընթացքում պետք է անցած դասերը կրկնեմ, թե չէ յոթերորդում շատ կդժվարանամ։

Հենց որ տարեվերջի քննությունները վերջացան, հայրիկս պիոներական ճամբարի մի ուղեգիր բերեց ինձ։

— Տես,— ասաց հայրիկս,— աշխատիր լավ օգտագործել ժամանակդ։ Լավ կազդուրվիր, մյուսներից հետ չմնաս։ Կռիվ քեզ, մկաններդ ամրապնդիր...

Ես նրան ոչինչ չասացի, թե հետս վերցնում եմ նաև հանրահաշվի ու հայերենի գրքերս, տետրերս։ Եթե ասեի, օրինակ՝ հայրիկս կծիծաղեր ու կասեր.

— Ինչպես որ տանում ես, այնպես էլ հետ ես բերելու։

Դե, իհարկե, ես գիտեմ, որ ամառային արձակուրդները, ճամբարը, ամառանոցը նրա համար են, որ մարդ կարգին հանգստանա և ուժ, եռանդ հավաքի նոր ուսումնական տարվա համար։ Շատ լավ գիտեմ, բայց մի՞թե ես ու, ասենք թեկուզ մեր դասարանցի Քնարիկը հավասար իրավունք ունենք հանգստանալու։ Նրա նա բոլոր առարկաներից «5» ունի։

Այ, եթե ես էլ նրա պես լինեի, ամբողջ ամառ քեֆ կանեի։

Հենց որ հասանք ճամբար ու տեղավորվեցինք, ես սկսեցի կռվել։ Ձեղավ, ճիշտ չհասկացաք ինձ։ Սկսեցի կռվել ոչ թե ընկերներիս հետ, այլ... ինքս ինձ հետ։

Ջոկատավարը ասում է.

— Վե՛ր կացեք, շարվեցե՛ք։

Իսկ ներսից ինձ վնասակար ձայներն ասում են։

— Ճանապարհից հոգնած ես, ի՞նչ կարիք կա շտապելու, կհասցնես, էլի։

Բայց ես նրանց չեմ լսում։ Ճիշտ է, երբ մարդ շատ հոգնած է լինում, մի քիչ ավելի նստելն էլ է հաճելի. բայց եթե ամենքը այդպես մտածեն, էլ ինչ կարգ ու կանոն կլինի։ Մի ժամ կքաշի, մինչև որ շարքը կազմ ու պատրաստ լինի։ Այդպես եմ մտածում ես, տեղից անմիջապես վեր եմ թռչում ու շարք կանգնում։

Գնում ենք լողացվելու. ջուրը շատ սառն է։ «Դե ի՞նչ կարիք կա վիզն ու թևերը լվանալու,— ասում է ներսից մի ձայն,— սառը ջուրը տաք մարմնին օգտակար չէ»։ Բայց ես այդ ձայնին չեմ լսում։ Եվ համոզվում եմ, դժվար է միայն առաջին քայլը։ Դա որ հաղթահարես, հետո արդեն ջրի սառնությունը նույնիսկ հաճելի կլինի։



Բայց հենց որ նստում եմ դասերս պատրաստելու...

Այսպես, ամբողջ օրը կռվում էի ինքս ինձ հետ։ Նույնիսկ, հիմա կծիծաղեք, «դրոշակ» խաղալու ժամանակ, երբ ինչ-որ մի ձայն ներսից ասաց՝ «միևնույն է, արագ վազել չես կարողանա», ես նրան բոլորովին չլսեցի. տեղից պոկ-

վեցի և ինչքան ուժ ունեի, վազեցի. այնպես վազեցի, որ հետո մեր խմբի տղաներն ասում էին՝ «Լավ ես վազում»...



—...աշխատիր լավ օգտագործել ժամանակը...

Հետճաշյա քնի ժամին ոչ մի կերպ քնել չէի ուզում. բայց ինքս ինձ ստիպելով քնեցի: Երևի չեք հավատում: Բայց կարող եք ինքներդ էլ փորձել: Պառկեցեք հանգիստ, աչքերդ փակեցեք, և անպայման կքնեք:

Երեկոյան, ազատ ժամին, պիոներները խումբ-խումբ հավաքված զրուցում էին, երգում, պատմություններ անում: Իսկ իմ պլանի համաձայն ես երեկոները կես ժամ պիտի պարապեի:

«Դե լավ, ինչ կարիք կա հենց առաջին օրվանից», ասաց ինձ մի ձայն: Բայց ես նրան չլսեցի: Վերցրի հայերենի գիրքս ու կես ժամ քերականություն սովորեցի: Հետո, երբ կես ժամն անցավ ու գիրքը դրեցի մի կողմ, այնքա՜ն թեթև էի ինձ զգում: Մյուսների հետ միասին ծիծաղում էի, կատակներ անում, երգում:

Շատ գեղեցիկ է մեր ճամբարը. անտառի մեջ է: Աչքդ որ կողմ գցես, ծառեր են, թփեր ծաղիկներ: Ի՜նչ լավ կանցկացնեմ իմ ժամանակն այստեղ: Մեր պիոներներից ամեն մեկը մի ծրագիր ունի: Վաչիկն ու Սամվելը ուզում են բույսերի կոլեկցիա հավաքել. Սեդան որոշել է մանդոլին նվագել սովորել, իսկ Միհրանը երազում է լող տալ սովորել: Իսկ ես որոշել եմ մկաններս լավ մարզել, թվաբանությունն ու հայերենը կրկնել, կազդուրվել, ամրապնդվել և Վաչիկի ու Սամվելի հետ մրցել. տեսնենք՝ ով ավելի լավ կոլեկցիա կհավաքի դպրոցի համար:

Ես հիմա մի գաղտնիք գիտեմ: Գիտեմ, թե ինչ է հարկավոր, որպեսզի մարդ իր նպատակին հասնի: Հարկավոր է կռվել իր ներսում եղած վնասակար ձայների հետ ու միշտ էլ պետք է կռվել առանց հետաձգելու, սկզբից, հենց առաջին օրվանից:

## ՎՏԱՆԳԻ ՊԱՀԻՆ

*Ն. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ*

Փոքրիկ Գարիկն իր շան հետ
Երկար շրջեց դաշտերում,
Հետո վազեց դեպի գետ՝
Լողանալու պաղ ջրում:

Եվ ձայն տվեց իր շանը.
— Բողա՛ր, արի լողանանք,
Արևավառ ամռանը
Այս ջրերում զովանանք:

Կանչեց, կանչեց նա կրկին,
Բայց շունը մոտ չգնաց.
Ծառերի տակ, գետափին
Նստեց մի տեղ ու մնաց:

Հանկարծ տղան խորամանկ
Շարժեց թևերն իր օդում,
Ու սուզվելով ջրի տակ,
Գոչեց.— Էհե՜յ, օգնությո՜ւն...

Եվ Բողարը անվարան
Նետվեց ջուրը նույն պահին,
Նետվեց ջուրը, որ արագ
Փրկի խեղդվող տղային:




Դ. ԳԱԶԱԶՅԱՆ

Նկ. Մ. ՏԻՐԱՏՈՒՐՅԱՆԻ

1

Մի քանի ամիս առաջ Ստեփանը գյուղից նամակ էր գրել իր ընկերոջը՝ Սպարտակին, թե իրենց ջոկատը վերցրել է կոլտնտեսության անասնապահական ֆերմայի շեֆությունը և պիոներներից յուրաքանչյուրը խնամում է մի հորթ։ «Եթե ձեր ջոկատի պիոներները հետևեն մեր օրինակին, մենք ձեզ հետ կմրցենք՝ հորթերը լավ խնամելու և գիրացնելու համար» — նամակի վերջում գրել էր Ստեփանը։

Մի քանի օր հետո ջոկատի հավաքույթում բուռն վիճաբանություն էր տեղի ունենում սոցմրցման հրավերը ընդունելու շուրջը։

— Ես առաջարկում եմ ընդունել սոցմրցման հրավերը,— ասաց ջոկատավար Գուրգենը։

— Ես գարնանից մի հորթ խնամում եմ արդեն,— նստած տեղից ձայնեց Աղնիվը։

— Բայց հորթ խնամելը հեշտ բան չէ,— զգուշացրեց Մամիկոնը.— մի քիչ անուշադիր եղար, կեղտոտ պահեցիր, կամ թե ժամանակին ջուր չտվեցիր՝ կհիվանդանա... կարող է և սատկել...

— Աչքի լույսի պես կխնամենք.— կտրուկ ասաց Սպարտակը։

— Ճի՛շտ է...— ամեն կողմից ձայնեցին պիոներները։

Ջոկատը գործի անցավ։ Ավագ ջոկատավար ընկեր Ասքանազի հետ պիոներները գնացին անասնապահական ֆերմա՝ վարիչին տեսնելու և պայմանավորվելու համար։

— Աչքիս վրա. այդպիսի գործին ո՞վ դեմ կլինի,— գոհունակությամբ ասաց ֆերմայի վարիչ Բենյամինը։

Պիոներները երեկոյան նամակ գրեցին Ստեփանենց ջոկատի պիոներներին և հայտնեցին, որ ընդունում են սոցմրցման հրավերը և որ ամեն մեկը որոշել է խնամել մի հորթ։

Այդ օրվանից Սպարտակն ու Ստեփանն ավելի հաճախ էին նամակ գրում իրար։

Սպարտակենց ջոկատի պիոներները լավ էին կատարում իրենց պարտականությունները։ Նրանք ջանք չէին խնայում առողջ և գեր հորթեր ունենալու համար. բայց չէին կարողանում հասնել մրցակիցներին։

Վերջին անգամ Ստեփանը գրել էր, որ իր խնամած հորթի քաշը օրական մեկ կիլոգրամ ավելանում է և պողպատե առողջություն ունի։

Պիոներները որոշեցին նամակ գրել Ստեփանին և հարցնել, թե ինչպե՞ս են խնամում հորթերին, որ այդպես առողջ են ու գեր։

— Գրենք, գրենք,— հավանություն տվին բոլորը և իսկույն նամակ գրեցին։

Ստեփանի պատասխանը չգոհացրեց պիոներների հետաքրքրությունը։ Առանձին նոր բան չէր գրել նա. խնամքի նույն կանոնները, նույն ուշադիր վերաբերմունքը, կերակրման նույն եղանակը, ինչ որ կատարում էին իրենք։

— Տղե՛րք, այստեղ մի ուրիշ գաղտնիք կա, պետք է գնալ և տեսնել,— առաջարկեց Սուրենը։

— Ճիշտ է ասում Սուրենը. մի գաղտնիք կա, որ մենք չգիտենք,— համոզված ասաց Գուրգենը։

Եվ որոշեցին գնալ Ստեփանենց կոլտնտեսություն։

2

Առաջին տպավորությունը, որ ստացան երեխաները կոլտնտեսության ֆերմայում, դա այն էր, որ Ստեփանենց ջոկատի պիոներների խնամած հորթերն իրոք ավելի առողջ ու գեր էին։

— Ես այդպես էլ գիտեի. Ստեփանը սուտ չի խոսի։ Տեսնո՞ւմ եք՝ ինչքան լավ են խնամել,— հպարտությամբ ասաց Սպարտակը ցույց տալով Ստեփանի խնամած հորթի՝ Սամիկի գլուխը։

— Ախր ինչպես եք խնամում, ի՞նչ կեր եք տալիս, որ ձեր հորթերն այդպես գիրանում են,— հետաքրքրվեց Լուսիկը։

— Ամեն ինչ. բայց ամենից շատ՝ եգիպտացորենից պատրաստած զանազան ուտելիք ու մեկ էլ սիլոս,— պատասխանեց Ստեփանը։

— Եգիպտացորե՞ն,— ձայնեցին պիոներներն ամեն կողմից։

— Այո, եգիպտացորեն,— պատասխանեց Ստեփանի հայրը՝ Հարությունը, որ հյուրերի հետ միասին եկել էր ֆերմա։ — Եգիպտացորենն անասունների ամենասիրած կերն է։ Նրանք ախորժակով են ուտում եգիպտացորենից պատրաստած կերը. դրա համար էլ շատ կաթ են տալիս և առողջ ու գեր են։



—...ամենից շատ՝ եգիպտացորեն...

— Ահա թե ինչու մեր հորթերը լավ չեն աճում, — ինքն իրեն խոսեց Գուրգենը։

— Իսկ եգիպտացորենի մեջ ի՞նչ կա, որ անասուններին այդպես ամրացնում ու գիրացնում է, — հարցրեց Մամիկոնը։

— Շատ սննդարար նյութեր,— բացատրեց Հարությունը.— եգիպտացորենը պարունակում է մեծ քանակությամբ օսլա, սպիտակուց, ճարպ, շաքար։ Դրանք այնպիսի նյութեր են, որ կենդանի օրգանիզմի աճման մեջ մեծ դեր են խաղում...

— Ի՞նչ լավ բույս է եղել եգիպտացորենը...— բացագանչեց Լուսիկը։

— Ով ուզում է լավ անասնապահ լինել, առանց եգիպտացորենի չի կարող յոլա գնալ,— շարունակեց Հարությունը։— Մենք այս տարի հարյուր ութսուն հեկտար եգիպտացորեն ենք ցանել և այժմ առատ բերք ենք հավաքում...

— Հիմա ձեզ մոտ բերքահավա՞ք է,— հարցրին պիոներները։

— Այո, — պատասխանեց Հարությունը, — եկեք ձեզ տանեմ դաշտ՝ տեսնեք։

Դաշտում պիոներներին մի նոր անակնկալ էր սպասում։ Նրանք կարծում էին, թե այնտեղ բերքը հավաքող բազմաթիվ կոլտնտեսականների և կոլտնտեսուհիների կտեսնեն։ Դրա փոխարեն նրանք տեսան մի նոր մեքենա, որ տրակտորի օգնությամբ էր առաջ գնում։ Մեքենան հավաքում էր եգիպտացորենի հարուստ բերքը։

— Սա ի՞նչ մեքենա է,— միաբերան հարցրին պիոներները։

— Մի՞թե չեք լսել,— զարմացավ տրակտորիստը.— սա ԿՈԻ-2 կոմբայնն է։ Դա նշանակում է եգիպտացորեն հավաքող երկշարքանի կոմբայն։ Սքանչելի մեքենա է։ Հնարել են սովետական կոնստրուկտորները։ Նայեցեք. առջևում նա ունի մի մեծ, իսկ աջ ու ձախ կողմը երկու փոքր կնճիթ։ Երբ տրակտորը կոմբայնը քաշում է առաջ, կընճիթներն իրենց արանքն են առնում բույսի ցողունը և մեքենայի մյուս մասերի օգնությամբ պոկում են կողրերն ու մաքրում. ցողունն ու տերևներն էլ թափում են մի կողմ, իսկ եգիպտացորենը՝ ամբարտակի մեջ։

— Մի օրում ինչքա՞ն եգիպտացորեն է հավաքում,— հարցրեց Գագիկը։

— Մեկ ժամում մի հեկտարից ավելի կարելի է հավաքել։ Այս կոմբայնը մի քանի տասնյակ բանվորի աշխատանք է կատարում։

— Իսկ մի հեկտարից ինչքա՞ն եգիպտացորեն է ստացվում։

— Դա կախված է լավ խնամելուց։ Մենք մի հեկտարից ստանում ենք 70—100 ցենտներ, իսկ եգիպտացորենի մշակության վարպետները՝ Օզերնին և Գարրովդան մի հեկտարից մինչև 221—223 ցենտներ եգիպտացորեն են ստացել...

Հարությունը պիոներներին հերթով նստեցրեց կոմբայնի վրա և նրանք իրենց աչքով տեսան մեքենայի աշխատանքը։

Պիոներները տուն վերադարձան։ Նրանք գյուղի հրապարակում հանդիպեցին կոլտնտեսության նախագահ Ավետիսին։

— Ընկե՛ր Ավետիս, մեր կոլտնտեսությունն ինչո՞ւ եգիպտացորեն չի ցանում...— հարցրին պիոներները։

— Արդեն որոշել ենք ցանել,— ասաց Ավետիսը.— ցանելու ենք 200 հեկտար։

Նախագահի ասածը պիոներների մեջ մեծ ցնծություն առաջացրեց։ Նրանք որոշեցին ամեն կերպ օգնել կոլտնտեսությանը եգիպտացորենի առատ բերք ստանալու համար։

# „ԾԱՌԱՏՈՒՆԿ“



Ֆոտո-էթիւտ՝ ՆԷՄՐՈՒԹԻ




Ս. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ

Երևանի 28-րդ դպրոցի Ստալինի անվան ջոկատի և Պավլիկ Մորոզովի անվան № 3 խաղաղային ճամբարի 25 պիոներ կազմակերպեցին հինգօրյա արշավ Երևան—Գառնի—Գեղարդ—Նորք—Երևան մարշրուտով:

ՀԼԿՍՄ Կենտրոնական Կոմիտեն արշավի բոլոր մասնակիցներին պարգևատրեց պատվոգրերով...

*Հունիսի քանի առավոտյան նշված տեղում երևաց ազդանշանը՝ պատուհանի տակ նկարված էր խարույկ, վրան՝ կաթսայիկ:*

*Էվելինան և Նազիկը նկատելով ազդանշանը, պիոներական շշնջյուն հաղորդեցին. «Վաղը, հունիսի քսանմեկին առավոտյան ժամը յոթին: Հավաքատեղը Պիոներների պալատի առաջ»:*

*Այդ գիշերը պատանի ճանապարհորդներին բոլոր գիշերներից ամենաերկարը թվաց...*

## ԱՌԱՋԻՆ ՓՈՐՁՈՒԹՅՈՒՆԸ

*Կոմերիտմիության անվան կուլտուրայի և հանգստի զբոսայգուց արշավախումբը շարժվեց դեպի Շռաղբյուր:*

*Առաջին դադարը տրվեց Շռաղբյուրում: Ճանապարհորդները նախաճաշեցին:*

*— Առաջին անգամն է, որ այսպես ախորժակով եմ հաց ուտում,— հրճվանքով ասաց Ռուզան Մարուսյային:*

*— Դեռ ախորժակդ շատ կբացվի,— կատակեց Մարուսյան:*

*Նախաճաշից հետո արշավախումբը շարժվեց առաջ: Վերջապահը՝ Հարութ Արիստակեսյանը ստուգեց դադարի վայրը: Պարզվեց, որ այնտեղ ոչ ոք ոչինչ չէր մոռացել:*

*— Առաջին քննությունը հաջող հանձնեցին,— ժպտալով ասաց Հարութը արշավախմբի պետին:*

*Արեն արդեն թեքվել էր դեպի արևմուտք, երբ արշավի հետախույզները բլրի վրայից ազդանշան տվին, թե մոտեցել են Գառնիին:*

*Մեծ դադարը եղավ Գառնի և Միլլի գետերի խառնարանի մոտ:*

*Համեղ ճաշից հետո պատանի ճանապարհորդներն անցան Գառնի գետը և բարձրացան Հարթասար: Այդտեղ պետք է տեղավորվեր ճամբարը: Սակայն արշավախմբի խորհուրդն այդ վայրը աննպատակահարմար գտավ գիշերելու համար: Առանց ժամանակ կորցնելու շարունակեցին ճանապարհը դեպի Միլլի գետը, որը հոսում է խորովի անտառի ստորոտով:*

*Երեկոյան դեմ ճանապարհորդները վրաններ խփեցին անտառի կանաչ բացատում և պատրաստվեցին առաջին գիշերն անցկացնելու լեռնային հորդառատ գետի ափին:*

## ԽՈՐՀՐԴԱՎՈՐ ԳԻՇԵՐ

*Վրաններում վառվեցին լապտերները: Ճեփոբահարը փչեց «շարվել տողանի» կանչը: Բոլորն արագորեն տողան կազմեցին:*

*— Այս երեկոյից սկսվում է մեր արշավային կյանքը,— դիմելով ճանապարհորդներին ասաց արշավախմբի պետը,— այս գիշեր մեր դրոշակն արդեն կծածանվի կայմի վրա:*

*Սովետական Միության Հիմնի հնչյունների տակ դեպի աստղազարդ երկինք բարձրացավ պատանի ճանապարհորդների հուանկյունի կարմիր դրոշակը:*

*— Ովքե՞ր են գիշերային հերթապահները,— հարցրեց պետը:*

*— Աննա Նազարյանը, Թերեզա Մեսրոպյանը, Կարլեն Փոթիկյանը և Ալբերտ Բարսոյանը,— պատասխանեց ավագը:*

*— Երկու ժամը մեկ փոխել հերթապահներին, — կարգադրեց պետը և ավագին՝ Հարութ Արիստակեսյանին մի կողմ տանելով ցածր ձայնով զգուշացրեց,— այս մութ ձորին լավ նայիր. ասում են, որ այս ճանապարհով գայլերի ոհմակ է անցնում խորովի անտառը:*

Կես գիշեր էր։ Հերթական շրջագայության ժամանակ Թերեզան հանկարծ քաշեց Հարութի թեը և ասաց.

— Տե՛ս, տե՛ս, ձորում հրագներ են վառվում։

Հարութը ցնցվեց։ Նա հասկացավ ամեն ինչ և առանց տագնապի հանգստացրեց.

— Պատահում է։ Դու պահակներին զգուշացրու թող խարույկի վրա ցախ շատ դնեն, որ ճամբարը լուսավորվի։

— Շատ լավ,— պատասխանեց Թերեզան և վազեց կատարելու ավագի կարգադրությունը։

Հարութն ինկույն մտավ պետի վրանը և հայտնեց տեսածի մասին։ Պետը վեր կացավ ու վերցնելով լապտերը գիմեց դեպի ձորը։ Շուտով շարժվող լույսերն անհետացան...

Հեռվում լսվեց խուլ դղրդոց, որն արագորեն ուժեղացավ։ Օդը գնալով ցրտում էր։ Երբ պահակներն իրար հետ խոսում էին, բերաններից գոլորշի էր բարձրանում։

— Ընկե՛ր պահակ,—վրանից ձայն տվեց Լաուրան,— եթե կարելի է մի բաժակ ջուր բերեք։

Էդիկը բաժակը ձեռքին գնաց աղբյուրի կողմը, որ գտնվում էր գետի ափին, և իսկույն տագնապահար ետ դարձավ։

— Ընկե՛ր պետ, ընկե՛ր պետ,— բացագանչեց նա,— աղբյուրն անհետացել է. գետը վարարել ու ողողում է ափերը։

Շուտով առաջին վրանից հայտնեցին, որ ջուրը մոտենում է վրանին։

Ճամբարը վտանգի տակ էր։ Երկու աղետ միանգամից։ Մի կողմից Միլլի գետի խորհրդավոր հորդացումը, որը սպառնում էր վրաններին, իսկ մյուս կողմից՝ օդի ջերմաստիճանի խիստ իջնելը։ Դա վտանգավոր էր քնած ճանապարհորդի համար։

Ի՞նչ անել, ինչպե՞ս վարվել։ Այս հարցը պետք է լուծվեր արագ։

— Գիշերային տագնա՛պ, —կարգադրեց պետը,— արթնացնել բոլորին և հավաքել խարույկի շուրջը։

— Ցախը շատ քիչ է. խարույկը երկար չի վառվի,— զգուշացրեց արշավախմբի ավագը։

— Կացիններով գնալ անտառ և փայտ բերել, — կարգադրեց պետը։

Շուտով խարույկին ավելի բոցավառվեց։

— Բայց այս գիշերվա խորհրդավոր արկածները պետք է պարզել,— ասաց հարցասեր Թինան։

— Ճիշտ է,— հաստատեց Մարուսյան.— այդ ինչպե՞ս եղավ, որ կես գիշերին գետը հորդացավ, օդը ցրտեց. չէ՞ որ ցերեկը եղանակը շատ տաք էր։

— Ձորում շարժվող գիշերային լույսերը նույնպես զարմանալի էին,— միջամտեց Թերեզան։

— Մի՛ զարմանա,— ժպտալով պատասխանեց Հարութը, —դրանք գայլեր էին։

— Գայլե՞ր,— զարմացան շատերը,— ափսոս, որ չենք տեսել։

## Ո՞ՒՄ ՀԱՑՆ Է ՀԱՄԵՂ

Գիշերային արկածների տպավորությունները դեռ չէին մոռացվել, երբ արշավախմբի պետը տողանի առաջ հայտարարեց.

— Այսօր անց է կացվելու ճաշ եփելու մրցում։ Պայմանն այս է. ցախը բերում եք ինքներդ, խարույկը վառում մեկ լուցկիով։ Ցախ բերելու և կաթսայիկներում ճաշ եփելու ազդանշանը կտրվի շեփորի միջոցով։

Ազդանշանից հետո սկսվեց եռուզեռը։ Ոմանք օջախներն էին պատրաստում, ոմանք կարտոֆիլ և բրինձ մաքրում։ Բոլորն էլ աշխատում էին արագ-արագ և միաժամանակ հետևում, որ ուրիշ չմոռանան, որպեսզի համեղ ճաշ եփելու մեջ առաջին տեղը գրավեն։



Բոլորն էլ աշխատում էին...

Բոլորից շատ չարչարվում էր Լաուրա Առաքելյանը։ Խարույկը ծուխ շատ էր անում։ Եվ այն պահին, երբ Լաուրան ուզեց կաթսայիկն ուղղել, կաթսայիկը թեքվեց և ճաշը թափվեց կրակի վրա։ Այդ նկատելով, բոլորն սկսեցին ծիծաղել։

Լաուրան մի պահ լռելուց հետո վերցրեց կաթսայիկը և ուղևորվեց դեպի աղբյուրը։

— Այդ ո՞ւր, Լաո՛ւրա, —հարցրեց պետը։

— Կաթսայիկս մաքրեմ,— տխուր պատասխանեց Լաուրան,— գոնե թեյ եռացնեմ։

Համեղ ճաշի մրցության մեջ հաղթանակ են տանում Նինա Ահարոնյանը, Էմմա Պետրոսյանը, Լենա Նազարյանը, Իննա Նազարյանը և Զինա Վարդանյանը։

## ԳԱՂՏՆԻՔՆԵՐԸ ՊԱՐԶՎՈՒՄ ԵՆ

Ճաշի ժամանակ ճանապարհորդներին մոտեցավ մի ձիավոր՝ անտառապահ Մաքսիմ քեռին։

Ճաշից հետո Մաքսիմ քեռու հետ աշխույժ զրույց սկսվեց։

— Միլլի գետի աջ ափին Խոսրովի անտառն է, — ասաց Մաքսիմ քեռին,— այդ անտառում բազմացնում են բծավոր եղնիկներ։

Ապա նա պատմեց, որ այդ գիշեր գայլերը եղնիկներին չեն կարողացել անհանգստացնել, որովհետև նրանց ճանապարհը փակված է եղել ճամբարի կողմից։

— Մաքսիմ քեռի, իսկ այս գիշեր Միլլի գետը ինչո՞ւ վարարեց և հանկարծակի օդը ցրտեց,— հետաքրքրվեց Ռիտան։

— Օրը շատ շոգ էր, սարերի ձյունը արագորեն հալվեց և ձյունախառն վարար ջուրը հոսելով՝ օդը ցրտեցրեց,— պատասխանեց Մաքսիմ քեռին։

## ՎՏԱՆԳԱՎՈՐ ԱՐԱՀԵՏԸ

Գեղարդի հնությունները ուսումնասիրելուց հետո պատանի ճանապարհորդները վերադառնում էին ճամբար։

— Եկեք ուրիշ, անծանոթ ճանապարհով գնանք, — ասաց Քնարիկը։

Բոլորը համաձայնեցին Քնարիկի հետ։ Ճանապարհորդները ճանապարհից շեղվեցին և ջրանցքի ափով սկսեցին քայլել դեպի ճամբար։ Շուտով ջրանցքն անհետացավ լեռներում և արահետը վերջացավ։

— Ի՞նչ անել,— հարցրեց ավագը,— ե՞տ վերադառնալ։

— Ոչ, չէ,— առարկեցին շատերը.— պետք է գտնել առաջ գնալու ելքը. խիզախ ճանապարհորդները չեն նահանջում։

Հետախույզներից երկուսը որոշ ժամանակից հետո վերադարձան։

— Երևում է, որ ժամանակին արահետի շարունակությունը եղել է, իսկ հիմա ծածկված է քարի կտորներով։ Անդունդի եզրով առաջ շարժվելն էլ վտանգավոր է,— զեկուցեց Ալբերտը։

Մի քիչ մտածելուց հետո պետը կարգադրեց՝ պարանով կապվել իրար և նիզակների օգնությամբ հաղթահարել վտանգավոր ճանապարհը։

Ներքևում, խոր անդունդի միջով, հսկա քարերին զարնվելով հոսում էր փրփրադեզ Գառնի գետը։

— Զգո՛ւյշ, ներքև չնայե՛լ. փայտով հենվել դեպի ձախ,— զգուշացնում էր պետը։ Անանցանելի ճանապարհը դանդաղորեն, բայց առանց պատահարի հաղթահարվեց։

— Տեսե՛ք, տեսե՛ք, սև ամպեր են կուտակվում,— հանկարծ ասաց Թերեզան։

Արշավախմբի պետը նայեց սև ամպերին, ուշադրությամբ դիտեց ժայռի պատռված կուրծքը և դիմելով ավագին, շտապեցրեց.

— Այստեղ երկար մնալը վտանգավոր է, քարերը փակել են մեր ճանապարհը...

Ավագն առաջ գնաց և նորից գործի դրեց պարանը։ Ճանապարհորդները հաղթահարեցին երկրորդ և վերջին դժվարությունը։

Լսվեց ուժեղ որոտ։ Ձորը թնդաց, ժայռերից պոկված քարերի ահռելի կտորներն սկսեցին գլորվել դեպի անդունդը։ Բայց ճանապարհորդները վաղուց արդեն անցել էին վտանգավոր արահետը և մոտենում էին ճամբարին։

## ՎԵՐՋԻՆ ԳԻՇԵՐԸ

Պատանի ճանապարհորդները հինգ օր շրջում էին Գառնիի և Գեղարդի լեռներում, Խոսրովի անտառում, ձորերում. ուսումնասիրում հնությունները, գետերը, ծանոթանում կոլտնտեսություններին, երեկույթներ կազմակերպում կոլտնտեսականների համար, օգնում աշխատանքին, հավաքում կոլեկցիաներ և կազմում հարուստ հերբարիումներ։

Վերջին օրը, մինչև ուշ գիշեր վառվում էր խարույկը։ Երեխաները երկար ժամանակ զրուցում էին, կատակում և իրենց տպավորությունները պատմում։

— Հարկավոր է քնել,— զգուշացրեց պետը,— առավոտ վաղ ճանապարհվելու ենք։

Բոլորը լուռ հնազանդվեցին, վերջին անգամ մեկը մյուսին բարի գիշեր մաղթեցին և մտան վրանները։ Մնացին պահակները։ Կես գիշերին սկսեց ուժեղ որոտը և կայծակը։ Պահակները խարույկի մոտ հանգիստ նստած ցախ էին ավելացնում կրակին. կարծես որոտն ու կայծակը իրենց չէր վերաբերում։

— Դու չե՞ս վախենում կայծակից,— հարցրեց Էվելինան Կլարային։

— Առաջին օրերը վախենում էի. հիմա սովորական բան է։

Արշավախմբի պետը ավագի հետ միասին ստուգեցին վրանների չորս կողմերը, որպեսզի անձրևի դեպքում ջուրը չհոսի վրանները։

Սկսվեց հորդ անձրև։ Բայց վրաններից ուրախ երգ ու ծիծաղ էր լսվում։

Առավոտյան վաղ, արևի առաջին ճառագայթների հետ, պատանի ճանապարհորդները ճանապարհ ընկան դեպի Երևան։

* * *

Մենք նկարագրեցինք շատ քիչ բան այն բոլորից, ինչ որ տեղի ունեցավ այդ հետաքրքիր արշավի ժամանակ։ Պիոներները հինգ օրվա ընթացքում շատ բան սովորեցին, շատ գաղտնիքներ պարզեցին։ Նրանք մինչև հիմա էլ հիշում են արկածային օրերը և պատրաստվում են այս տարվա պիոներական էքսպեդիցիային։

## ԱՐՏԵԿԻ՝ ՏԱՐԵԳՐՈՒԹՅՈՒՆԻՑ

1925 թվական։ Հունիսի տասնվեցին Սև ծովի ափին բացվեց Արտեկ համամիութենական պիոներական ճամբարը։ Հունիսի վերջերին փոթորիկն ավերեց քողտիկ-վրաններից կազմած ճամբարը, բայց շուտով վերականգնվեց։ Այդ ամառն Արտեկում հանգստացան 320 պիոներ։

1926 թվական։ Ձմեռային ընդմիջումից հետո կյանքը ճամբարում նորից աշխուժացավ։ Երեխաներին երեք անգամ այցելել է Կլարա Ցետկինը։ «Երեխաների կյանքը ճամբարում այնպես հետաքրքիր է, այնպես ուշագրավ, որ ստիպում է քիչ մոռանալ շրջակայքի գեղեցկությունները» գրել է նա։

Նոյեմբերին ծավալվեցին ամառային ութ շենքերի կառուցման աշխատանքները։

1928 թվական։ Արտեկում հանգստացողների թվում կային համամիութենական առաջին պիոներական հավաքի մասնակից պիոներներ և միջազգային կոնգրեսին մասնակցող բանվորների երեխաներ։ Ճամբարում հաճախ էր լինում ֆրանսիական հայտնի գրող Հանրի Բարբյուսը։

Հետագայում Արտեկի իններորդ տարեդարձի կապակցությամբ նա նամակ ուղարկեց։ «Արտեկն իսկական դրախտ է. բայց երկրային դրախտ, որտեղ երեխաներն իրենց կյանքն անց են կացնում ուրախ, ֆիզիկական ուժերն ու առողջությունն ամրապնդելով, զարգացնում են իրենց գիտելիքներն սպորտի բնագավառում»։



Առավոտն Արտեկում։

1929 թվական։ Սկսվեցին Վերին ճամբարի շինարարական աշխատանքները։ Միաժամանակ կառուցվեցին աշխատակիցների բնակելի շենք, ակումբ...

1930 թվական։ Գարնանը բացվեց Վերին ճամբարը։ Բացվեց նաև ջոկատավարների համամիութենական ճամբարը։

1932 թվական։ Ճամբարն աճում է։ Այստեղ հանգստացան 3.374 պիոներ։ Կազմակերպվեցին տեխնիկական կայան և Արտեկի թանգարանը։

1934 թվական։ Հունիսի քսանմեկը արտեկցիների համար անմոռանալի օր էր։ Նրանց մոտ հյուր էր եկել Վ. Մ. Մոլոտովը։ Պիոներները նրան պատվավոր արտեկցի ընտրեցին։ ՀամԼԿԵՄ Կենտկոմի որոշմամբ Արտեկ եկան 200 պիոներ, որոնք ակտիվ կերպով պայքարում էին կոլտնտեսային սեփականության հափշտակողների դեմ, աչքի էին ընկնում պիոներական ստեղծագործական աշխատանքներում, ուսման մեջ։ Հանգստանալու էին գալիս Ավստրիայի բանվորների երեխաները։

1935 թվական։ Դարձյալ Արտեկ է գալիս Վ. Մ. Մոլոտովը։ Նա զրույց է ունենում պիոներների հետ, մասնակցում խարույկին։

1936 թվական։ Օգոստոսին Արտեկի պիոներների պատգամավորությունը այցելում է Վ. Մ. Մոլոտովին, որն այդ ժամանակ հանգստանում էր Ղրիմում։ Մեկ ամիս հետո Արտեկին տրվեց Սուուկ-Սու հարևան հարուստ

*ամառանոցը՝ իր 33 շենքով և հիասքանչ զբոսայգիով: Հետագայում այդ դարձավ երկրորդ ճամբարը:*

*1937 թվական: Արտեկի երկրորդ ճամբարում հանգստանում են Իսպանիայի ռեսպուբլիկական բանակի մարտիկների երեխաները, որոնք պայքարում էին ֆաշիստների դեմ:*

*1938—1940 թթ.: Ամեն տարի Արտեկի Վ. Մ. Մոլոտովի անվան պիոներական ճամբարում ավելի մեծ թվով պիոներներ են հանգստանում: Ուժեղացվում է բժշկական կազմը, կատարելագործվում ու բովանդակալից են դառնում պիոներական աշխատանքները ջոկատներում:*

*1944 թվական: Ֆաշիստական զավթիչներից ազատագրված Արտեկը արագ կերպով վերականգնվում է: Օգոստոսի վերջին վերածնված ճամբարում հանգստանալու էին եկել 500 պիոներ:*

*1945 թվական: Արտեկի քսանամյակի կապակցությամբ, երեխաների դաստիարակության, առողջության կազմակերպման և հատուկ ծառայությունների համար, ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահությունը Արտեկը պարգևատրեց Աշխատանքային Կարմիր դրոշի շքանշանով, իսկ ճամբարի շատ աշխատակիցներ՝ շքանշաններով ու մեդալներով:*

*Արտեկին են հանձնվում Գուրզուֆում գտնվող սանատորիաները և ամառանոցը: Դրանցից կազմվում է երրորդ ճամբարը: Արտեկ է այցելում Մ. Ի. Կալինինը:*

*1946—1954 թվականներին Արտեկի չորս ճամբարներում հանգստացել են մոտ քառասուն երկու հազար պիոներ և դպրոցական: Սովետական երեխաների հետ միասին այդտեղ հանգստանում են Չինաստանի, Չեխոսլովակիայի, Լեհաստանի, Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի և շատ ուրիշ երկրների աշխատավորների երեխաները:*

*1955 թվականի հունիսին լրանում է պիոներների ամենասիրելի վայրի՝ Արտեկի պիոներական ճամբարների ստեղծման երեսուն տարին:*

*Գ. ՌՈՄՐ-ՇԱՏ*

## ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԷՔՍՊԵԴԻՑԻԱ

— Տղանե՛ր, տղանե՛ր, Արմենը չկա...

— Ճիշտ որ. իսկ ո՞րտեղ է Արմենը...

Պիոներները, որոնք հավաքվել էին պիոներական սենյակում և ինչ-որ հարցի մասին ոգևորությամբ զրուցում էին, մի պահ լռեցին ու կարծես թե զարմանքով իրար նայեցին:

— Դրուժինայի խորհրդի հանձնարարությամբ նա պետք է կազմեր հեռագրի տեքստը, որ այսօր ուղարկեինք «Պիոներսկայա պրավդա» թերթի խմբագրությանը. իսկ հիմա չկա, —հուզմունքը զսպելով վրա տվեց Վահիկը:

Հենց այդ պահին էր, որ բացվեց պիոներական սենյակի դուռը և շնչակտուր ներս մտավ Արմենը:

— Վերջապես, վերջապես հաջողվեց... վրա՛ էլ ունեցանք: Գիտեք չէ՞, որ շրջկոմում խոստացել էին. իսկ այսօր ես ինքս տեսա. այնքա՜ն լավն է,— հևալով ասում էր Արմենը և օդում թափահարում հեռագրի տեքստը:

Պիոներների ուրախությանը չափ չկար:

Հոկտեմբերյանի երկրորդ միջնակարգ դպրոցի պիոներները հիշում են այն օրը, երբ դրուժինայի խորհրդի և «Պիոներ» ամսագրի խմբագրության նախաձեռնությամբ որոշեցին մասնակցել «Պիոներսկայա պրավդա» թերթի 1955 թվականի պիոներական էքսպեդիցիային: Այդ օրը նրանք երկար խոսեցին, որոշեցին էքսպեդիցիայի նպատակը, խնդիրները, անձնակազմը, եղան շրջկոմում, խորհրդակցեցին դասատուների հետ և ավագ ջոկատավար Ռ. Կիրակոսյանի ղեկավարությամբ սկսեցին նախապատրաստվել: Հիմա արդեն պիոներական սենյակի առանձին անկյունում, որը կրում է «Մեր պիոներական էքսպեդիցիան» անունը, կարելի է տեսնել պատին փակցված զանազան տեղեկություններ, խորհուրդներ պատանի ճանապարհորդներին, զանազան ճանապարհորդական իրեր:

Երբ մոտենում ենք այդ անկյունը, առաջինն աչքի է ընկնում կենտրոնում փակցված հեռագրի տեքստը, որի վրա խոշոր տառերով գրված է «Սիրելի խմբագրություն. մեծ ցանկություն ունենք մասնակցելու 1955 թվականի պիոներական էքսպեդիցիային: Մեր նպատակն է հետազոտել և հայտնաբերել նոր շինանյութեր մեր շրջանում: Էքսպեդիցիայի ընթացքում կօգնենք դաշտում աշխատող կոլտնտեսականներին»:

Արդեն նախապատրաստությունն ավարտված է: Հիմա քննություններ են, իսկ քննություններից հետո՝ բարի ճանապարհ:

*Մ. ԱՄԻՐՅԱՆ*

# ԱՌԱՋԱՎՈՐՆԵՐԸ



Ֆրոնտիկ Խաչատրյան



Մելանիա Խաչատրյան

Ավարտվեց 1954—1955 ուսումնական տարին: Տասնյակ հազարավոր դպրոցականներ բարձր գնահատականներով ու գովասանագրերով փոխադրվեցին հաջորդ դասարան:

Տասնամյակն ավարտած շատ պատանիներ ու աղջիկներ էլ իրենց հարազատ դպրոցներին հրաժեշտ տալով, կմտնեն ուսումնական բարձրագույն հաստատությունները սովորելու, կգնան արտադրության մեջ աշխատելու, կդառնան մեր երկրի արժանավոր քաղաքացիներ:

Մեր ռեսպուբլիկայի շատ դպրոցականներ ուսման գերազանցիկներ են: Ահա Իջևանի հայկական միջնակարգ դպրոցի վեցերորդ «դ» դասարանի աշակերտ Ֆրոնտիկ Խաչատրյանը: Վեցերորդ տարին է, որ նա ուսման գերազանցիկ է և այս տարի էլ փայլուն գնահատականներով փոխադրվեց յոթերորդ դասարան: Ֆրոնտիկը միևնույն ժամանակ պիոներական լավ աշխատող է, ջոկատի խորհրդի նախագահ:

Այդպես է սովորում նաև Ախտայի շրջանի Ջրառատ գյուղի միջնակարգ դպրոցի հինգերորդ «ա» դասարանի աշակերտուհի Ֆլորա Օհանյանը: Ֆլորան ցանկանում է դառնալ անասնաբույժ և աշխատել կոլտնտեսության ֆերմայում: Սրանց նկարների կողքին դուք տեսնում եք Սևանի Խ. Աբովյանի անվան միջնակարգ դպրոցի վեցերորդ «գ» դասարանի աշակերտուհի Զվարթ Մաղաքյանի և ութերորդ «բ» դասարանի աշակերտուհի Լյուսա Մանուկյանի նկարները: Նրանք նույնպես գերազանցիկներ են և բարձր ցուցանիշներով են փակել այս ուսումնական տարին:

Ահա Ախտայի հայկական միջնակարգ դպրոցի հինգերորդ «դ» դասարանի աշակերտուհի Մելանիա Խաչատրյանը, Դիլիջանի հայկական միջնակարգ դպրոցի հինգերորդ դասարանցի՝ Սարգիս Մելյանը և նույն դպրոցի չորրորդ դասարանի աշակերտուհի Լաուրա Սանբրոսյանը, որոնք նույնպես ուսման գերազանցիկներ են: Երեխանե՛ր, դուք էլ եղեք այս պիոներների նման: Հիշեցեք և կատարեցեք մեծ Լենինի պատգամները՝ «Սովորել, սովորել, սովորել»: Միայն սովորելով կարելի է գրավել գիտության բարձունքները:



Ֆլորա Օհանյան



Լյուսա Մանուկյան



Զվարթ Մաղաքյան



Լաուրա Սանբրոսյան



Սարգիս Մելյան



# 6×9

Լ. ԲՈՐԻՍՈՎ

Նկ. Ն. ՇԵԲԵՐՍՏՈՎԻ

*1928 թվականի ամռանը Ալեքսեյ Մաքսիմովիչ Գորկին մեկ ու կես շաբաթ ապրեց Լենինգրադում, «Եվրոպական» հյուրանոցի առաջին հարկում։*

*Այդ օրերին շատ մարդիկ եղան նրա մոտ. գալիս էր սկսնակ գրողը խորհուրդների և օգնության համար, վազելով գալիս էր ամեն տեղ խցկվող թերթի լուսանկարիչը։*

*Ալեքսեյ Մաքսիմովիչ Գորկուն գտնում էին և՛ պրոֆեսիոնալ, և՛ լուսանկարիչ-սիրողները։ Գալիս էին ընթերցողները, որպեսզի տեսնեն մեծ ու բարի Գորկուն, սեղմեն նրա ձեռքը և գնան...*

*Արևոտ առավոտ էր։ Ալեքսեյ Մաքսիմովիչը բաց լուսամուտի առջև նստած աշխատում էր։ Մեկ էլ ինչ-որ մեկը թուղթ գցեց ներս։ Թուղթն ընկավ սեղանի վրա։*

*«Ներս թողեք ինձ, թե չէ՝ ինձ ձեզ մոտ չեն թողնում, սիրելի ընկեր Գորկի. իսկ ես պիոներ եմ, սովետական դպրոցի աշակերտ. և ես ուզում եմ նկարել ձեզ պատի թերթի համար. ինձ չեն թողնում ներս գամ. ասացեք, որ թողնեն. ես ձեզ կնկարեմ և իսկույն կգնամ։ Շատ անհրաժեշտ է»։*

*Ալեքսեյ Մաքսիմովիչը կարդաց գրությունը և մոտեցավ լուսամուտին։ Մայթի վրա կանգնած էր տասը տարեկան մի տղա՝ կապույտ շալվարով, բոբիկ ոտքերին՝ սանդալներ։ Նա կանաչ թասակ էր դրել գլխին, կարմիր վզկապ կապել. ձախ ձեռքում եռոտանի հենակ կար, իսկ աջով բռնել էր լուսանկարչական ապարատը։*

*— Դո՞ւ գցեցիր թուղթը,— հարցրեց Գորկին։*

*— Այո. թողեք. ես ձեզ կարող եմ մանդատ ցույց տալ։*

*— Դե արի. ես կասեմ, որ քեզ ներս թողնեն։*

*Մի րոպեից հետո, տղան կանգնած էր Գորկու առաջ և ժպիտը դեմքին, նայում էր նրան։ Ապա նա սկսեց ուսումնասիրել սենյակը և նրա*

լուսավորությունը։ Ընտրեցին բուխարու կողքին, անկյունում դրված բազմոցը։

— Նստեցեք այստեղ և թերթ կարդացեք։ Ա՛յ, այդպես։

Ալեքսեյ Մաքսիմովիչը հնազանդ նստեց և թերթը ձեռքը վերցրեց։ Տղան իրար անցավ, փընչացնում էր և իրեն սկսեց ավելի ազատ զգալ։ Երկար ժամանակ ոչինչ չէր ստացվում. եռոտանին պարկետի հատակին չէր կանգնում, նրա ոտքերը սահում էին։

— Դու մի՛ շտապիր, բարեկա՛մս. նկարիր ինչպես հարկն է. ես կսպասեմ։ Մի տես է, թե ոնց քրտնեցիր, խեղճ տղա։

Տղան իրոք որ քրտնել էր։ Նա հանցավորի պես նայում էր ժպտացող Գորկուն և ամեն վայրկյան ասում.

— Ներողություն, հենց հիմա...

Երբ եռոտանին արդեն հաստատված էր, իսկ նրա վրա ամրացված էր փոքրիկ ու վատ ապարատը, պարզվեց, որ Գորկուն բազմոցի վրա նստած նկարել հնարավոր չէ։ Արևը խանգարում էր։

— Ներողություն, հենց հիմա...

— Իսկ դու մի շտապիր, ես ա՛յ այնտեղ կնըստեմ. կարելի՞ է։

— Այնտե՞ղ. եթե այնտեղ նստեք, անմիջապես պետք է նկարել. իսկ իմ ապարատը վեց ինչի վրա է. նա քառասուն տարեկան է. նրանով կարելի է միայն բնություն նկարել։ Պետք է մտածել...

Վերջապես ամեն ինչ պատրաստ էր, կիզակետը գտնված էր, դիաֆրագման՝ որոշված, մնացել էր միայն պլաստինկան դնել և արտասանել՝ «Հանգիստ, նկարում եմ»։

Ալեքսեյ Մաքսիմովիչը բազկաթոռին նստած ժպտում էր։ Հանկարծ երեխան լաց եղավ, բռունցքով խփեց փորին և նստեց հատակին։

— Պլաստինկան տանն եմ թողել, ա՛յ գլուխ է հա՛... պլաստինկան տանն եմ թողել...

Ալեքսեյ Մաքսիմովիչը վեր թռավ բազկաթոռից։ Տղան վերցրեց եռոտանին ու նրան ամրացված ապարատը և դուրս վազեց սենյակից։

Գորկին շփոթվեց։ Նա դուրս եկավ միջանցք, բայց լուսանկարիչն այնտեղ չէր։ Գորկին մոտեցավ լուսամուտին, նայեց փողոց։ Կանաչ թասակ դրած տղան վազելով անցնում էր ճանապարհով։

— Բարեկա՛մս,—կանչեց Գորկին. ետ դարձիր, սիրելի՛ս, ես շատ պլաստինկաներ ունեմ... ամեն տեսակի էլ կան։ Իմ որդին շատ ունի, բարեկամ...

Անհաջողությունից տխրած լուսանկարիչը չլսեց։ Նա թռավ տրամվայի վագոն և գնաց։

Ալեքսեյ Մաքսիմովիչը փակեց լուսամուտը, իջեցրեց վարագույրները։ Երեկոյան նրան ասացին, որ ուզում են իրեն լուսանկարել։

— Փո՞քր տղա է,— հարցրեց Գորկին։

— Ոչ, մեծահասակ է։

— Մի՛ թողնեք, ես զբաղված եմ։ Բայց եթե փոքրիկը կգա, անմիջապես բերեք ինձ մոտ։

Գալիս էին լուսանկարիչներ՝ բեղավոր և սափրված, մազավոր և ճաղատ, երիտասարդ և ծեր։ Բայց այն փոքրիկ տղան այդպես էլ չեկավ։

Թարգմ. Ռ. ՂԱՐԻԲՅԱՆ



## ՄԱՔՐԱՍԵՐ ԱՂՋԻԿԸ

Վ. ՏԱԼՅԱՆ

Մաքրասեր է Նուշանը։
Հենց որ մնաց նա տանը
Շեմք ու հատակ կդիտի՝
— Ավելն ո՞ւր է, ո՞վ գիտի,—
Կասի չորս կողմ նայելով,
Քիթը օդում ցայելով.
— Տվեք տեսնե՞մ, ավլեմ ես.
Ի՞նչ կեղտոտ է, տես մի տե՞ս...
Իսկ դուք գիտե՞ք, այն օրը,
Ասաց փոքրիկ եղբորը.

— Շոր տուր է՞, մի՛ խաղ անի,
Սրբեմ փոշին սեղանի։
Թախտին նստած անկյունում
Ցուցամատը իր տնկում,
Հրամայում է մեծի պես,
— Բերե՞ք, տվե՞ք՝ մաքրեմ ե՞ս...

Դուք ասացեք, հենց տանը
Մաքրասե՞ր է Նուշանը։

# Քաջ ԱՐՋՈՒԿԸ



Գ. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

Նկ. Հ. ՍԱՆԱՍԱՐՅԱՆԻ

Օրը գյուղում կեսօր դառավ,
Ձավար փռեց տատը պառավ.
Ասաց.
— Նանը մատաղ բալին,
Նայիր, իսկ ես լվամ խալին:
Ավիկը թե՝
— Շատ լավ, նանի՛:
Տատը գնաց, որ գործն անի,
Իսկ թոռնիկը արջուկն առած՝
Պահակ նստեց դռան առաջ:
Առվի ափին Անահիտը
Ցեխոտելով դունչն ու քիթը,
Խաղ էր անում,
Ուրախանում:
Նա Ավիկին կանչեց.
— Արի՛...
— Չէ՛, ես պահակ եմ ձավարի:
Որ գամ՝ կուտեն այս բոլորը
Մեր հավերն ու գիժ աքլորը:
Ի՛նքդ արի, ի՛նքդ արի,
Տես, արջուկս ոնց կպարի:
— Չէ՛, շինել եմ ես ջրաղաց,
Դիտե՞ս ինչքան ալյուր աղաց...
— Ի՞նչ, իսկական ալյո՞ւր, այո՞:
— Զարմանալու ի՞նչ կա, Ավո՛,
Չես հավատում, մոտ արի տե՛ս:
— Բա որ հավերն այս աներես
Ձավարն ուտե՞ն, տատն իմանա՞:
— Արջուկը թող պահակ մնա.
Հո գազանից կվախենա՞ն:
— Ճիշտ ես ասում, Անահի՛տ ջան:
Ավոն լսեց Անահիտին.
Սև ու բրդոտ իր քոթոթին
Պահակ դրեց, տվեց խրատ.
— Արջո՛ւկ, ուշքդ պահիր վրադ.
Քշա ասա դու հավերին,
Հենց որ վրա տան ձավարին:

Ավոն գնաց: Աքլորն հեռվից
«Ծուղրուղու-ղո՜ւ, իմ հետևի՜ց»—
Հրամայեց իր հավերին,
Վազեց, որ վերջ տա ձավարին:
Ու հավերի զորքը քաղցած
Վրա տվեց ուրախացած:
Աքլորն արջին ցած գլորեց,
Նրան հաղթված հայտարարեց:
Պա՜հ, ինչպե՜ս են ուտում, ինչպե՜ս,
Պա՜հ, կարկուտ է գալիս կարծես:
Տատը լսեց ու թռավ վեր.
— Վա՜յ, կոտորվեք, անտե՛ր հավեր...



Ո՞ւր ես, Ավո՛, սատանի ճուտ,
Ձավա՞ր է սա, թե՞ հավի կուտ...
Քշա՛, քշա՛,— տատը կանչեց:
Հավերի զորքը նահանջեց,
Փախավ նաև կարմրակատար
Աքաղաղը հրամանատար...
Ավոն արջին տեսավ ընկած,
Տխրեց ու լաց եղավ հանկարծ.
— Որ աքլորն էլ է քեզ հաղթում,
Ի՞նչ արջ ես դու... ա՜խ դու... ա՜խ դու...

# ԴԵՊՔ ԷՄԱՏԵԼՏԻՆ ՓՈՂՈՑՈՒՄ

ՊԵՐՃ ԶԵՅԹՈՒՆՑՅԱՆ
(Երևանի 63-րդ դպրոցի աշակերտ)

Նկ. Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆԻ

*Խարխուլ պատի հետևից դուրս եկավ մի կին և իր երեխայի՝ փոքրիկ Ցուատի ուղեկցությամբ արագ մտավ Էմատելտին փողոցը, ուր ապրում էին քաղաքի ամենահարուստ մարդիկ։ Շատ շուտով լսվեց մի զգույշ ձայն.*

*— Հազիվ հինգ տարեկան լինի… բայց կարելի է…*

*Կինը՝ Ցաթման, գունատվեց, բայց անզոր էր շուրջը որևէ բան տեսնելու։ Ամեն ինչ սև էր։ Գուցե դա առաջին անգամն էր, որ նա կույր լինելու համար այդքան ափսոսաց։ Ինչքա՞ն էր ուզում այդ րոպեին տեսնել շրջապատի անցուդարձը, իմանալ, թե ովքեր էին գաղտնի փսփսում իր Ցուատի մասին։ Ցաթման որդուն հպել էր իրեն, կարծես ցանկանում էր ձուլվել նրա հետ։ Իսկ այդ ցանկությունը նրա մեջ ինչ-որ վատ նախազգուշակում էր առաջացնում։*

*Ցաթման որոշեց նորից քայլել և այդպիսով փախուստ տալ վտանգից… Բայց մի՞թե դա ճիշտ էր։ Արդյոք իզուր չէ՞ր ներշնչել նա իրեն այդ բոլորը։*

*Կասկածն ստիպեց առաջ շարժվել։ Նա սարսափով հիշեց երեկվա դեպքը։ Ի՜նչ անխիղճ էին նրանք… Ինչո՞ւ առաջարկեցին իրեն ծախել Ցուատին. որ որդեգրե՞ն, որ իբր լա՞վ նայեն։ Նրանք ասացին՝ Ցուատը գեղեցիկ է, նա պետք է լավ ապրի… Մայրը սարսափի մեջ անգամ հաճույք էր զգում «Ցուատը գեղեցիկ է» բառերից։ Այժմ պարզ է, որ շշուկով խոսող մարդիկ հետապնդում էին իրենց։ Երեկ սարսափը զսպելով Ցաթման կոպտաբար քշել էր նրանց։*

*Այսօր էլ՝ նույնը։ Երկար և պատառոտված հագուստը խանգարում էր քայլելուն. բայց և այնպես արագ էր քայլում։ Ցուատն աշխատում էր մորը տանել որքան կարելի է ապահով տեղերով։ Նա ոչինչ չէր հասկանում և զարմացած էր, թե ինչո՞ւ էին այդքան արագ քայլում։*

*Նորից լսվեցին նույն շշուկները։ Բայց անցորդներն այնքան բարձր էին խոսում, որ այդ շշուկները կորչում էին փողոցի ժխորի մեջ։ Ցաթման, լսողությունը լարած, ճգնում էր որսալ ամեն մի ձայն, ամեն մի շշուկ։ Նա կարողացավ հասկանալ միայն երկու բառ.*

*— Մի քիչ շտապիր… կհեռանան…*

*Որքան շատ բառեր էր որսում Ցաթման, այնքան նրա նախազգուշակումները դառնում էին ավելի տագնապալի։*



Ցուատն իր հետ էր…։

*Թեթև քամի փչեց։ Տերևների սվսվոցը ձուլվեց մարդկային շշուկներին։*

*Ցաթման քայլերն արագացրեց։*

*Նա քայլում էր, քայլում և քանի դեռ իր ափի մեջ զգում էր հարազատի ձեռքի հպումը, ուրախանում էր։ Ցուատն իր հետ էր։*

*Շուտով տղան հոգնեց.*

*— Մայրի՛կ, նստենք։*

*Ցաթման շփոթվեց, բայց ուրիշ ճար չկար. կանգ առավ։ Նա նստեց շենքերից մեկի անկյունում։*

— Ըհը՛… սրանք…— լսեց նա. մնացածը թռցրեց քամին։

— Սպասիր… դեռ…

Նույն ձայներն էին, անծանոթ և օտար։ Քիչ էր մնում սարսափից գոռար մայրը, օգնության կանչեր։ Բայց ո՞ւմ… Նա ավելի ուժեղ գրկեց Ցուատին և սկսեց արտասվել։ Նա զգում էր որդու տաք շնչառությունը և մանուկ սրտի բաբախումը։ Դժվար թե որևէ մեկը կարողանար նրանց բաժանել։

Նա սկսեց մտածել իրեն տանջող հարցի մասին։ Մի՞թե այդ բոլորը ճիշտ էր, մի՞թե այդ մարդիկ հետապնդում էին իրեն, որ մորը և որդուն բաժանեին։ Բայց չէ՞ որ կարող է պատահել՝ նրանց խոսքերն իրենց չէին ուղղված։

— Մայրի՛կ, քաղցած եմ,— հանկարծ ասաց Ցուատը։

Ցաթմայի դեմքին նորից երկյուղ երևաց։

— Մի քիչ սպասիր։

— Չէ՛, քաղցած եմ,— պնդեց Ցուատը։

Մայրը խղճաց նրան և ասաց.

— Գնանք մի բան գնենք։

— Ոչ, հերթ կա։ Խանութը, ա՛յ, դիմացի մայթին է. ես շուտ կգամ։

— Համբերիր Ցուատ. մայրիկին չե՞ս ուզում լսել։

Որդին դարձյալ աղերսագին կրկնեց.

— Մա՛… գնամ…

Մոր աչքերում նորից արցունք երևաց։ Բայց Ցուատը քաղցած էր։ Նա նույնիսկ լաց եղավ։ Ցաթման չհամբերեց, դողացող ձեռքերով բռնեց հարազատի ձեռքը և ասաց.

— Միասին գնանք… ես կողքիդ կկանգնեմ։

Եվ նրանք դժվարությամբ անցան մյուս մայթը։ Մայրը լսում էր ավտոների անդուրեկան, ականջ ծակող սուլոցները և ջղայնանում։

Ահա և հացի խանութը։ Աղմուկից մայրը գլխի ընկավ, որ բավական մարդ կար։ Նա ուրախացավ. այդքան մարդկանց մեջ դժվար թե մի բան պատահի։ Բայց, երբ թողեց իր հարազատի ձեռքը, վախեցավ և նույնիսկ ճչաց.

— Ցուա՛տ…

Լսվեց տղայի մանկական ձայնը.

— Մա՛…

Քամին սաստկացավ։ Ծառերը սվսվոցով խոնարհեցին գլուխները։ Քամուց պաշտպանվելու համար մայրը խարխափելով գնաց պատի մոտ և կծկվեց։

Քիչ հետո նա նորից գոռաց.

— Ցուա՛տ…

— Էհ, սև հացը վերջացավ,— հանկարծ լսվեց մեկի ձայնը։ Ժպիտը երևաց մոր նիհար դեմքին։ Ուրեմն Ցուատը հիմա կգա…

Նա ուրախությամբ շրջվեց այն կողմը, թևերը լայն բաց արեց, իր հարազատին գրկելու պատրաստ։ Բայց ոչ ոք չմոտեցավ նրան։ «Մայրիկ» կանչողը երևի Ցուատը չէր, այլ մի ուրիշը։ Անհամբերությունը հասավ ծայր աստիճանի։ Կույրը



—…Ցուա՛տ…

մի քիչ առաջացավ, ձեռքերը այս ու այն կողմ տարածեց, բայց իզուր։

«Անպայման դեռ սպասում է» անցավ նրա մտքով, չնայած գիտեր, որ փողը սև հացին հազիվ բավականանար։

«Այդ մարդը երևի կատակ արեց, հացը չի վերջացել» մտածեց նա, բայց մեխվեց իր տեղում, երբ լսեց նույն ծանոթ ձայնը.

— Դե՛, արա՛գ, արա՛գ…

Նա պարզեց ձեռքերը, նետվեց խանութի առջև հավաքված ամբոխի մեջ և սկսեց գոռալ.

— Ցուա՛տ, ո՞ւր ես, արի՛, արի՛…

Միայն շրջապատի ականջ ծակող ժխորը և քամին պատասխանեցին. խժը՜ժ, վզը՜զ, ո՜ւ...

Հանկարծ Ցաթման իր պարզած ձեռքերի մեջ զգաց ինչ-որ թղթադրամներ։ Նա երկյուղով գլխի ընկավ, որ իր մոտից երկու հոգի արագ հեռացան։ Աղերսագին շրջվեց նրանց կողմը... Ցուատին տարան, փախցրին... փոխարենը տվին այս թղթադրամները...

Վզը՜զ, վզը՜զ, ու՜ւ,—սուլում էր քամին։ Ցաթման սեղմեց ափերը։ Թղթադրամները կոշտ էին և ծակեցին ափերը։ Խշխշոցն էլ նման էր այն շշուկներին։ Ցաթման սարսափով ցած գցեց ձեռքի թղթադրամները և վերջին ուժերը հավաքելով, սկսեց բարձր կանչել.

— Ցուա՛տ, արի՜, արի՜...

Վաղուց արդեն մթնել էր։ Սև երկնքում երևում էր սառը լուսնի մանգաղը...

## ՉԵԽԱԿԱՆ ՄԱՆԿԱԿԱՆ ԲԱՆԱՍՏԵՂԾՈՒԹՅՈՒՆՆԵՐ

### ԽԽՈՒՆՋԸ

Խխունջ, խխունջ, ա՛յ խխունջ,
Ի՞նչ ես նստել լուռ ու մունջ.
Ցույց տուր պոզերդ երկար՝
Գարա կառնեմ քեզ համար.
Գարա՝ անուշ ու համեղ,
Շորեր՝ սիրուն ու շքեղ,
Ցույց տուր պոզդ մի անգամ՝
Ես քեզ դառնամ բարեկամ։

### ԿԱՏՈՒՆԵՐԻ ԶՐՈՒՅՑԸ

— Ճանկեր ունի՞ հայր կատուն։
— Ի՞նչ հիմարն ես եղել դու.
Ապա փորձիր առանց ճանկ
Մի մուկ բռնել... ի՞նչ տանջանք։

— Զագեր ունի՞ հայր կատուն։
— Հիմար-հիմար դուրս մի՛ տուր.
Ե՛վ ես, և՛ դու պատվավոր
Զագուկներն ենք մեր յավ հոր։

Փոխադր. Հ. ՍԵՎԱՆ

## ԱՆՏԱՌՈՒՄ

Ս. ԽԱՐԱՋՅԱՆ

Տաք ամառն էր ամենուր
Իր հուրը վառում,
Շրջում էի զոհ ու լուռ
Կանաչ անտառում։
Խոր անտառն էր շշնջում,
Եվ առտն ալեծուփ։
Ծաղիկ էի ես փնջում,
Անցնում թփից-թուփ։
Եվ շնիկս էր հոտոտում,
Վազում դես ու դեն,
Կամ կորչում էր թացառում,
Կամ ելնում իմ դեմ։
Մեկ էլ հանկարծ թավուտով
Երբ հեռու գնաց,
Մի նապաստակ նա բերեց
Ոտքերից բռնած։
Ծաղիկներս երկնագույն
Շուտ թափեցի ցած,
Ու վազեցի դեպի տուն
Ես ուրախացած...
Խեղճը գրկիս մեջ դողում,
Թախծում էր լռին,
Նա էր նայում իր շողուն,
Կանաչ անտառին։
Կարծես ուզում էր ասել՝
Մի՛ տար ինձ քեզ հետ,
Ես սիրում եմ անտառներ,
Հանդ ու արահետ։
Հուզվեց, տխրեց անսահման,
Իմ սիրտը բարի,
Բաց թողեցի ես նրան
Եզրին անտառի.
— Գնա, գնա, իմ սիրո՛ւն,
Անտառըդ սիրած,
Թող տխրությունն աշխարհում
Քեզ թվա երազ։




Նկ. Ռ. ՆԱՆՈՒՇՅԱՆԻ

*(Կորեական ժողովրդական հեքիաթ)*

Մի մետաքսավաճառ ուզեց Փխենյանից գնալ շուկա: Նա իր հետ վերցրեց մետաքսի երեսուն փոքրիկ կապոց, հեծավ իր ավանակն ու գնաց: Ճամփին գիշերը վրա հասավ, բայց մոտերքում ո՛չ գյուղ կար, ոչ էլ դատարկ ֆանզա*: Ճամփի մոտ միայն մի գերեզման էր բարձրացել և նրա շուրջը մի լայն պատ կար: Գերեզմանի երկու կողմում երկու քարե արձան էին կանգնած:

Մետաքսավաճառը վճռեց գիշերն այնտեղ անցկացնել: Նա բոլոր կապոցները կապեց իրար, դրեց գլխի տակ, պառկեց ու քնեց: Լավ քնեց հոգնած ճամփորդը. բայց երբ արթնացավ, տեսավ, որ իր գլխի տակ մետաքսի փոխարեն մի մեծ քար է դրված:

Մետաքսավաճառն սկսեց լաց լինել: Նա ո՛չ դրամ ուներ, ո՛չ ապրանք, և չգիտեր, թե ինչպես պիտի պահի իր ընտանիքը:

Դժբախտը մտածեց, մտածեց, թե ինչ անի, և վճռեց գնալ մոտիկ գյուղն ու գանգատվել այնտեղի դատավորին: Իսկ այդ գյուղի իսկական դատավորը երկար ժամանակով գնացել էր Սեուլ: Բնակիչները նրա փոխարեն դատավոր էին ընտրել մի ծերունու: Այդ ծերունին էլ բոլորի նման մի գյուղացի էր, բայց հայտնի էր իր արդարությամբ ու մեծ խելքով: Դրա համար էլ ժողովուրդը հարգում էր նրան:

Ծերունին լսեց մետաքսավաճառի գանգատն ու հարցրեց.

— Դու գերեզմանի մոտ ոչ ոքի չե՞ս տեսել:

— Ոչ,— պատասխանեց մետաքսավաճառը,— գերեզմանաքարի երկու կողմում քարե երկու արձան են կանգնած միայն:

— Այն ժամանակ թող այդ արձանները բերեն դատարան: Նրանք են վկաները:

Գյուղացիները զարմացան. չլինի՞ թե իրենց դատավորը խելագարվել է: Ո՞վ է տեսել, որ քարե արձանները դատարանում վկա լինեն: Բայց չէ՞ որ դատավորի հետ վիճել չի կարելի: Ինչպես ծերունին ասաց, այնպես էլ արեցին:

Ամբողջ գյուղն էր հավաքվել այն տան դռան մոտ, որտեղ ծերունին իր արդարացի ու խիստ դատն էր վարելու: Բոլորն էլ ուզում էին լսել, թե ինչպես է դատավորը հարցաքննելու քարե արձաններին:

Բայց ծերունին բույլ տվեց, որ միայն երեսուն մարդ մտնեն սենյակը: Դատավարությունն սկսելուց առաջ նա ստուգեց, թե ի՞շտ է արդյոք, որ դահլիճում երեսուն մարդ են գտնվում: Եվ երբ համոզվեց, որ իսկապես այդքան են, սկսեց դատավարությունը:

* Ֆանզա—տուն, խրճիթ

Դատավորը նախ կարդաց չինական գողերի հիանալի ստեղծագործություններից մի քանի էջ, ապա հիշակեց Կորեայի օրենքները, որոնք գողերին պատժում են ծանր պատիժներով, և վերջապես, թույլ տվեց, որ խոսի մետաքսավաճառը: Մետաքսավաճառը պատմեց այն ամենը, ինչ որ իրեն պատահել էր:

Այն ժամանակ ծերունին հանդիսավոր ու խիստ դիմեց քարե արձաններին, որոնք դրված էին այն սենյակում, որտեղ տեղի էր ունենում դատը:

— Պատասխանեցե՛ք՝ ո՞ւմն եք տեսել այն գիշեր, երբ գողերը գողացան մետաքսը:

Արձանները, իհարկե, լուռ էին: Այն ժամանակ դատավորը բարձրաձայն ասաց.

— Քանի որ դուք չեք պատասխանում իմ հարցին, ուստի ես ձեզ դատապարտում եմ փայտի քսան հարվածի: Դրանից հետո կիմանաք, թե ինչպես է հարկավոր վարվել:

Եվ ծերունին նշան արավ պահակներին, որոնք վերցրին կաղնե պինդ փայտեր ու սկսեցին հարվածել արձաններին:

Այդ ժամանակ սենյակում նստած մարդիկ չկարողացան իրենց զսպել ու սկսեցին ծիծաղել:

Լսելով նրանց ծիծաղը, բարկացած դատավորը բարձրացավ իր տեղից ու գոռաց.

— Դատավորի վճռի վրա ծիծաղելը ոճրագործություն է: Ես հայտարարում եմ ձեր պատիժը: Ձեզանից յուրաքանչյուրն այստեղ, քանի արևը դեռ մայր չի մտել, պիտի բերի մի կապոց մետաքս: Ով չբերի, նա փայտի հարվածներ կուտի: Գնացե՛ք:

Այն ժամանակ բոլորն, իհարկե, սկսեցին խնդրել դատավորին:

— Պարո՛ն դատավոր, խղճացե՛ք: Չէ՞ որ ինքներդ գիտեք, որ մեր գյուղում մետաքս չեն վաճառում. մենք չենք կարող այդքան մետաքս ճարել կամ գնել:

Բայց դատավորը դարձյալ կրկնեց.

— Նա, ով կվերադառնա առանց մետաքսի, կիմանա՝ փայտերը լա՞վ են հարվածում, թե՞ ոչ:

Այն ժամանակ բոլորը ցրվեցին, որովհետև գիտեին, որ դատավորն իր խոսքերն իզուր քամուն չի տալիս:

Ինչպես դատավորն ասաց, այնպես էլ եղավ. քանի արևը մայր չէր մտել, այդ մարդիկ վերադարձան և դատավորի ոտքերի մոտ երեսուն կապոց մետաքս դրեցին:

Մետաքսավաճառը տեսավ այդ կապոցները և ուրախությամբ բացականչեց.

— Իմ մետաքսն է, իմ կապոցներն են:

Դատավորն ասաց.

— Իհարկե՝ քո կապոցներն են:

Եվ դիմելով նրանց, ով բերել էր այդ մետաքսը, հարցրեց.

— Ումի՞ց եք գնել:

Բոլորը միաձայն աղաղակեցին.

— Մեր գյուղի խանութպանից: Նա չէր ուզում վաճառել. բայց մենք նրան առաջարկեցինք եռապատիկ գին, որովհետև մեզանից ոչ ոք չի ցանկանում ծեծվել:

— Նշանակում է՝ հենց այդ խանութպանն էլ գողացել է մետաքսը,— ասաց դատավորը:— Գնացեք ու խլեցեք նրանից ձեր դրամը և այդ գողին քարշ տալով բերեք այստեղ: Նա փայտի հարյուր հարված կստանա իր կողերին:

Հետո ծերունին նայեց բոլորին և ավելացրեց.

— Այդ քարե արձաններն օգնեցին մեզ և մենք գտանք ոճրագործին: Եթե ես չհրամայեի նրանց ծեծել, դուք չէիք ծիծաղելու: Եթե դուք չծիծաղեիք, ես ձեզ չէի տուգանի: Եթե ես ձեզ չտուգանեի, դուք չէիք նետվի մետաքս ճարելու և եռապատիկ գնով գնելու: Դուրս է գալիս, որ արձաններն օգնեցին գողին գտնելու:

*Ռուս. թարգմ. Գ. ԱՐԵՅԱՆ*




## «ԿԱՐՄԻՐ ՈՒ ԿԱՊՈՒՅՏ ՓՈՂԿԱՊՆԵՐ»

*Ամերիկյան որբանոցի կառավարիչ միստր Սմիթը մտնում է փականագործական արհեստանոցը: Ընդմիջում է. բանվորները նախաճաշում են: Այնտեղ են և մի քանի սկաուտներ:*

*— Ոտքի կանգնեցե՛ք, Բող չնաշի,— կիսաձայն դիմում է սկաուտներից մեկը մյուսներին:*

*Նրանք դժկամ և դանդաղորեն ոտքի են կանգնում: Բանվորները չեն շարժվում տեղերից:*

*— Իսկ դուք ինչո՞ւ ոտքի չեք կանգնում:*

*— Ի՞նչ է ասում,— հարցնում է մի բանվոր՝ շարունակելով հացը ծամել:*

Սկաուտներից մեկը թարգմանում է։

— Թող գնա իրենց Ամերիկայում այդպիսի կարգադրություններ անի։ Մեզ մոտ այդպես ընդունված չի։ Նույնիսկ բանակում, երբ հրամանատարը ներս է մտնում, ճաշող բանակայինները վեր չեն կենում տեղերից։ Իսկ ո՞վ է ինքը։ Թարգմանիր...




Սմիթը վրդովված նրանց համարձակությունից՝ անսպասելի կերպով հարձակվում է բանվորներից մեկի վրա և ուժեղ ապտակում։

Բոլոր բանվորները զայրույթով վեր են ցատկում տեղերից։ Իսկ նա, որին ապտակել էր, հանգիստ շարժումներով բռնում է Սմիթի փրենչից, նա առնում մյուս ձեռքը և բռունցքի մի ուժեղ հարված իջեցնում նրա երեսին։

Քիչ հետո լցվում են Կոզակի պոստի բոլոր շշակները։ Վրդովված բանվորները գործադուլ են հայտարարում...

Այս տեսարանը նկարագրված է Մկրտիչ Արմենի «Կարմիր ու կապույտ փողկապներ» վեպում։

Համաշխարհային առաջին պատերազմի ժամանակ թյուրքական ջարդերի հետևանքով բազմաթիվ հայ երեխաներ որբանում են։ Ասիթից օգտվելով հայտնվում են ամերիկյան «բարեգործները»։ Նրանք իրը եկել են որբերին փրկելու։ Բայց նրանց նպատակն է Հայաստանը դարձնել ամերիկյան գաղութ։ Դրա համար էլ որբանոցներ են հիմնում։

Եվ ահա, մի տասնհինգամյա որբացած պատանի վերջապես մտնում է Լենինականի Կոզակի պոստ ամերիկյան որբանոցը։ Նրան վերցնում են որպես սկաուտ։

Որբական կյանքի դաժան պայմաններում նրանից խլում են ամեն ինչ, նույնիսկ խաչական անունը, և նա սկսում է կոչվել սկաուտական համարով՝ Ութսունինը։

Ութսունինն այնտեղ շատ բան է տեսնում։ Տեսնում է, թե ինչպես որբերը անօգնական մեռնում են ամերիկացիների անտարբեր հայացքների տակ, իսկ սկաուտապետ Վահան Թիրաքը իր շանը թաղում է նվագախմբով և հատուկ արարողությամբ։

Ութսունինը չփվում է քաղաքի պատրաստական կազմակերպության քարտուղար ընկեր Միսակի հետ։ Նա իր ընկերներով պայքար է ծավալում որբանոցում տիրող կարգերի դեմ։ Ստեղծվում է կոմերիտական կազմակերպություն, որի մեջ ընդգրկված են սկաուտների մեծամասնությունը։ Որբանոցի ղեկավարները ամեն կերպ աշխատում են հայտնաբերել այդ կազմակերպությունը և չեզոքացնել, բայց չի հաջողվում։ Կոմերիտականներն սկսում են բացահայտ և համարձակ գործել։ Սովետական կյանքը թափանցում է որբանոց։ Ութսունինը վերատանում է իր անունը։

Մ. Արմենի «Կարմիր ու կապույտ փողկապներ» վեպը կարդացվում է մեծ հետաքրքրությամբ։

# «ԵՐԵԽԱՆԵՐԸ»

Ով չի զգում այն օրվա հաճույքը, երբ դպրոց է ընդունվում, երբ ասում են, թե՝ դու դպրոցական ես։

Սոնիկն այդպիսի հրճվանք է ապրում («Երջանկություն»), երբ դուրս է գալիս դպրոցի գիրեկտորի կաբինետից։ Նրա ընկերը՝ փոքրիկ Վաչիկն էլ է շատ ուրախանում։ Ահա քայլում է Սոնիկը փողոցով։ Նա խնդրում է մորը, որ իր ձեռքը թողնի։ Չէ՞ որ նա արդեն փոքր չէ. ասք է դրել կյանքի մի նոր, լուսավոր ուղի։ Նա անչափ երջանիկ է։

Մի ուրիշ պատմվածքում Կարենենց ջոկատի տղաները լավ վոլեյբոլիստներ են, իսկ Կարենը վոլեյբոլ շատ է սիրում, բայց խաղալ չգիտե։ Նրան պահ են տալիս իրենց շորերը և խաղում։ Կարծես նա մի փոքրիկ կախարան է, որի վրա շորեր են կախում։ Հետո տղաները նկատում են, որ դա շատ անհարմար բան է և ուզում են իրենց ընկերոջը սովորեցնել վոլեյբոլ խաղալ։ Կարենն իր անշնորհք շարժումներից ամաչում է։ Ընկերները նրան չեն ծաղրում, այլ խրախուսում են, և նա շուտով դառնում է լավ վոլեյբոլիստ։

Իսկ «Փչված էլեկտրալամպը» պատմվածքի հերոս փոքրիկ Ազատը կարծում է, թե հերոսություն է փողոցի էլեկտրալամպը ջարդելը։ Բայց հետո ընկերների օգնությամբ նա վերափոխվում է և այս անգամ ինքն է հետևում, որ փողոցներում էլեկտրալամպերը կանոնավոր վառվեն։

Գրքի երկրորդ բաժնում պատմվում է Իրանում ապրող երեխաների մասին։




Ահա փոքրիկ դժբախտ Մանուշը, որը ուզում է աշխատել, կաուր սվաղել, կամ ավազան մաքրել, որպեսզի փող աշխատի և կարողանա իր մեռած հորը թաղել («Անցած օրերից»)։

Փոքրիկ Նասերը հիվանդ է։ Անհրաժեշտ է ամառանոց գնալ։ Բայց դրա համար միջոցներ չկան։ Նասերը և նրա եղբայրը՝ Հադին որոշում են ոտքով գնալ։ Նասերը մրսում է, հիվանդանում և մի ամիս հետո մահանում։ Հադիին շարունակ տանջում է միևնույն միտքը՝ «Ինչո՞ւ ուրիշներն առողջանում են ամառանոցում, իսկ Նասերը չառողջացավ» («Ամառանոցը»)։

«Հարևաները» և «Փոքրիկ ցուցարարը» պատմվածքների մեջ ցույց է տրված, թե ինչպես մարդիկ սկսում են պայքարել լավ ու երջանիկ կյանքի համար։

Հ. Վարդանյանի «Երեխաները» ժողովածուի մեջ շատ հետաքրքիր և ուսանելի գործեր կան։ Անպայման կարդացեք այդ գիրքը։

Ա. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ

# ԷԼԵԿՏՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ԿԵՆԴԱՆԱԿԱՆ ԱՇԽԱՐՀՈՒՄ

*Ս. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ*

*(Բիոլոգիական գիտությունների թեկնածու)*

Դուք գիտեք, որ ֆիզիկական և քիմիական աղբյուրներից բացի, մարդիկ և կենդանիները նույնպես էլեկտրականության աղբյուրներ են:

Սրանից մոտ երկու հարյուր տարի առաջ իտալացի ֆիզիկոս և բժիշկ Գալվանին գորտերի վրա փորձեր անելով, եկավ այն եզրակացության, որ մկանների կծկման ժամանակ առաջանում է էլեկտրական հոսանք: Այդ հարցով սկսեցին զբաղվել շատ գիտնականներ և գտան, որ էլեկտրական հոսանք կա մարդու օրգանիզմի բոլոր մասերում՝ ուղեղում, մկաններում, սրտում, ստամոքսում, աղիքներում, աչքերում և այլն: Կենդանական էլեկտրականությունը վերանվանվեց բիոէլեկտրական երևույթ՝ այսինքն, կյանքի (բիոս հունարեն բառ է և նշանակում է կյանք) ընթացքում առաջացող էլեկտրականություն: Օրգանիզմի մահից հետո նրա մեջ էլեկտրական հոսանքները ընդհատվում են:

Օրգանիզմում առաջացող էլեկտրական հոսանքները տեսնել և գրի առնել, առանց հատուկ ուժեղացնող հարմարանքների, շատ դժվար է: Նրանց ուժը և լարվածությունը չափազանց փոքր է. օրինակ՝ մարդու ուղեղում էլեկտրական ալիքները մոտ հինգ միլիոն անգամ թույլ են մեր բնակարանները լուսավորող էլեկտրականությունից: Կենդանիներից միայն էլեկտրական ձկների մոտ է առաջանում մեծ քանակությամբ էլեկտրաէներգիա, որը նրանք օգտագործում են իրենց թշնամի ձկներին կայծակնահարելու համար: Այդ ձկներից մեկը



«էլեկտրական կատվաձուկը» այնքան էլեկտրականություն է արտադրում, որ եթե հնարավոր լիներ այն օգտագործել, կարելի է տեղից շարժել տրամվայը:

Բժշկության և բնագիտության համար մեծ հետաքրքրություն են ներկայացնում մարդու մարմնում առաջացող էլեկտրական հոսանքները: Ձեզանից երևի որևէ մեկը եղել է բժշկի առանձնասենյակում, որտեղ հատուկ հարմարանքով գրի են առել նրա սրտում առաջացող էլեկտրական ալիքները: Այդ ալիքները ունեն որոշ ձև, որը փոփոխվում է զանազան հիվանդությունների դեպքում: Առանց հիվանդին նայելու բժիշկը կարող է իմանալ, թե ուղեղի ո՞ր մասն է վնասվել կամ հիվանդացել: Նա միայն հիվանդի գլխին ամրացնում է երկու հաղորդիչ, որոնք իրենց ծայրերին միացվում են հատուկ ուժեղացնող սարքավորման: Այդ ապարատը ուժեղացնում է ուղեղից եկող էլեկտրական ալիքները և մի քանի միլիոն անգամ գրի է առնում ֆոտոժապավենի վրա: Ուղեղի ալիքները լինում են չորս տեսակ, իսկ հիվանդությունների դեպքում կամ փոփոխվում է նրանց ձևը կամ հանդես են գալիս երկու նոր ձևի ալիքներ:

Ուղեղի էլեկտրական ալիքների առաջացումը սերտորեն կապված է մեր զգայական օրգանների՝ աչքից, ականջից, քթից, մաշկից ստացվող գրգիռների հետ: Արտաքին աշխարհից եկող գրգիռները զգայական օրգաններում առաջացնում են մեկ վայրկյանում 100—300 առանձին էլեկտրական ալիքներ: Դրանք հասնելով ուղեղը, անընդհատ գրգռում են նրան: Երբ աչքերը փակելուց ընդհատվում են աչքից եկող գրգիռները, զգալի կերպով փոփոխվում են ուղեղի ճակատային մասի էլեկտրական հոսանքները:

Հետաքրքիր է, որ քնի ժամանակ այդ ալիքները փոքրանում են, նրանց տեսակները պակասում են: Աշխատանքի ժամանակ ընդհակառակը ուժեղանում են և ձեռք բերում որոշ ձև: Ուսումնասիրությունները ցույց են տվել, որ առաջարկված խնդիրը լուծելու ժամանակ դպրոցականի ուղեղի ալիքները ուժեղանում են կիսագնդերի ճակատային մասերում, իսկ խնդիրը լուծելուց հետո նորից վերականգնվում է այդ ալիքների նախորդ ձևը:

Այժմ Սովետական Միության համարյա բոլոր խոշոր քաղաքներում կան լաբորատորիաներ, որտեղ զբաղվում են բիոէլեկտրական երևույթների ուսումնասիրությամբ: Երևանում, Գիտությունների ակադեմիայում ուսումնասիրում են ուղեղում և մարդու աչքում առաջացող էլեկտրական հոսանքները: Շատ հիվանդանոցներում բժիշկները օգտագործում են էլեկտրաչափիչ ապարատներ: Բայց մինչև հիմա էլ լրիվ չի պարզված, թե ինչպես են առաջանում այդ էլեկտրական հոսանքները, որովհետև նրանք շատ են տարբերվում մեր կենցաղում օգտագործվող էլեկտրականությունից:

# ՀԵՏԱՔՐՔԻՐ ԺԱՄԱՆՑ

## ԽԱՂԵՐ

### Աշխարհագրական էստաֆետա

Խաղացողներ՝ 12—24 հոգի: Խաղավայրը՝ դաշտ, հրապարակ, բացատ: Խաղացողները բաժանվում են երկու հավասար խմբերի: Նրանք շարվում են ստարտի գծի վրա՝ իրար հետև և իրարից երկուական քայլ հեռավորությամբ:

Ֆինիշի գծի վրա, խմբերի դիմաց, դրվում է մեկական սեղան, իսկ սեղաններին մատիտներ և այնքան տետրակի թերթ, որքան խաղացող կա տվյալ խմբում: Ամեն մի թերթի ճակատին գրված է աշխարհագրական մի հարց՝ օրինակ. Սովետական Միության մի ռեսպուբլիկայի, էստոնիայի մայրաքաղաքի, Կասպից ծով թափվող մի գետի, Կովկասի ամենաբարձր լեռան, մեր հերոս քաղաքներից մեկի և այլ անուններ:

Խաղն սկսելու ազդանշանը տրվելուն պես, խմբերի առաջին խաղացողները վազքով գնում և վերցնում են իրենց սեղանի վրայի առաջին թերթիկը: Նրանք հարցի տակ գրում են պատասխանը: Ապա վերադառնում իրենց շարքը, ձեռքով խփում են երկրորդ խաղացողին: Ամեն մի խաղացող գրավոր պատասխանում է միայն իր հարցաթերթիկին:

Հաղթում է այն խումբը, որը շուտ է վերջացնում խաղը և բոլոր հարցաթերթիկներին ճիշտ է պատասխանում: Բոլոր դեպքերում հաղթանակը տրվում է այն խմբին, որը բոլորովին սխալներ չի թույլ տվել և կամ ամենաքիչ սխալներ է կատարել:

ՎԱՐԴԱՆ ՎԱՐԴԱՆՅԱՆ

### Փաթաթիր-քանդիր

Պիոներները բաժանվեցին երկու հավասար մասի և խորությամբ շարք կանգնեցին:

Ջոկատավարը շարքերից 20 քայլ հեռավորության վրա դրեց 2 հավասարաչափ փայտիկ և ամեն մեկի մոտ 5 մետր երկարությամբ թել:

Հրահանգը լինելուն պես ամեն շարքի առաջին պիոները վազում, վերցնում է թելը և փաթաթում փայտիկի վրա, ապա ետ գալով խփում է հաջորդ պիոների ձեռքին. հաջորդ պիոները գնում քանդում է փաթաթած թելը և դնում նորից փայտիկի մոտ: Եվ այսպես շարունակ:

— Բայց ով կլինի հաղթողը,— հարցրին երեխաներից մի քանիսը:

— Հաղթողը կլինի այն շարքը, որի վերջին խաղացողը ավելի շուտ ինձ մոտ կբերի թելն ու փայտիկը,— ասաց ջոկատավարը:

Վ. ՊԵՏՐՈՍՅԱՆ

### Դիտող պիոներները

Օդերևութաբանական չափումները վերջացնելուց հետո, աշակերտն ու աշակերտուհին նստած բլրի վրա, դիտում էին



դաշտով անցնող գնացքի շարժումը: Երկաթուղու գծերի երկայնքով անընդհատ քամի էր փչում:

— Մեր չափումները քամու ի՞նչ արագություն ցույց տվեցին,— հարցրեց տղան:

— Մեկ վայրկյանում 7 մետր:

— Դա ինձ բավական է, որպեսզի որոշեմ, թե ինչ արագությամբ է գնում գնացքը:

— Չէ՞ մի,— թերահավատությամբ ասաց աղջիկը:

— Ուշադրությամբ նայիր գնացքի շարժմանը և կհասկանաս:

Աղջիկը մի քիչ մտածեց և հասկացավ:

Դուք էլ նայեցեք այս նկարին և որոշեցեք, թե ի՞նչ արագությամբ էր գնում գնացքը:

### Շղթայի վերանորոգումը

Երիտասարդ վարպետի առաջ դրված էին հինգ խումբ օղակներ: Նրանցից ամեն մեկը բաղկացած էր երեք օղակից: Դրանք պետք է առանց լրացուցիչ օղակների միացնել մի շղթայում: Օրինակ՝ երրորդ և չորրորդ օղակները միմյանց հետ միացնելը պահանջում է կատարել երկու գործողություն, որովհետև անհրաժեշտ է օղակներից որևէ մեկը բաց անել և ապա այն միացնել մյուսին:




Այսպիսով, երբ օղակների հինգ խումբը մի շղթայում միացնենք նույն կարգով, ապա կկատարենք ութ գործողություն: Իսկ վարպետն ուզում էր շղթան պատրաստել վեց գործողությամբ: Դա նրան հաջողվեց: Բայց ինչպե՞ս:

Կազմեց՝ Գ. ՄԱՆՈՒԿՅԱՆ

## ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐ

Մեր ամսագրի 1955 թվականի №№ 2, 3 և 4 համարներում տպագրված «Հետաքրքիր ժամանցի» պատասխաններն են.

«ՊԻՈՆԵՐ» № 2

1. ԿՐՈՍՎՈՐԴ

Հորիզոնական.— 1. Արոս, 3. Դուռ, 5. Զարդ, 7. Ուրալ, 8. Բանն, 10. Ռիգա, 11. Գարի, 12. Իլի, 14. Կարաս, 16. Կատուն, 18. Անապա, 19. Լուսան, 21. Մինոր, 23. Զադ, 25. Էմալ, 17. Արար, 29. Նեռն, 30. Վազք, 31. Ասիա, 32. Քիր, 33. Տոլա:

ՈՒՂՂԱՀԱՅԱՑ.— 1. Ամառ, 2. Սուրա, 3. Դալնի, 4. Ռուբլի, 5. Զանգ, 6. Դելի, 7. Ուզար, 9. Նաճառ, 13. Լուարա, 14. Կալ, 15. Սան, 16. Կամ, 17. Նուռ, 20. Սևան, 22. Նորք, 23. Զանազ, 24. Դավիթ, 25. Էռնա, 26. Վիեննա, 27. Ազոտ, 28. Բելա:

«ՊԻՈՆԵՐ» № 3

1. ԿՐԻՊՏՈԳՐԱՄԱ. «...Աշխատանքը, դա բոլոր ուրախությունների աղբյուրն է, ամենալավ բանը աշխարհում»:

1. Լուարա, 2. Շալախո, 3. Բանու, 4. Ըմբիշ, 5. Վուրդուն, 6. Մայրը, 7. Թեհրան, 8. Ներուդա, 9. Էռնա, 10. Խանոյ, 11. Բախ, 12. Նա:

2. ՌՈՒՍ ՇԱԽՄԱՏԻՍՏՆԵՐ — Չիգորին, Ալյոխին:

3. ԴՐԱՇՐՋՈՒԹՅՈՒՆ — Քարան, կարապ, ռանկ, կամար, ազգ, վագր, վազա, կաղնի, մանի, զենիթ, նժար, վինակ, գավառ, ազդր, տարազ, ձգան, արկ, կոավ, մորակ, ձոր, բրու, երկ, նսկա:

4. ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ. մարա, զարուն, բառ:

«ՊԻՈՆԵՐ» № 4

1. ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ԽՆԴԻՐ.— 1. Յամալ, 2. Ապշերոն, 3. Կոլա, 4. Կերչ, 5. Բրետան, 6. Կորնուել, 7. Մալակա, 8. Ֆլորիդա, 9. Կալաբրիա, 10 Յուկատան:

2. ՄՏԱԾԻՐ ԵՎ ԳՏԻՐ

1. Մարդու բունն իր մեջ պարունակում է անորոշ չափով տարբեր անօրգանական աղեր (նատրիումի, կալիումի, կալցիումի և այլն). նրա միջով էլեկտրական հոսանք անցնելիս այդ աղերը ներարկվում են էլեկտրոլիզի և մարտկոցի երկու բևեռում առանձնանում են աղերի բաղադրամասերը, որի նետանքով էլ լեզուն զգում է կծվաբրու համ:

2. Ճիշտ էր առաջին մեքենավարը, որը հատոցը տեղավորել էր մեքենայի բափքում:

Ճիշտ պատասխանել են՝ Մ. Սարաֆյանը (Դիլիջան), Լ. Շահումյանը (Ադրբեջանական ՍՍՌ), Է. Փանիկանյանը (Երևան), Լ. Պողոսյանը (Շահումյանի շրջ.), Է. Վարդանյանը (Էջմիածնի շրջ.) և ուրիշները:

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝ «Քննությունից հետո»*
*ֆոտո-էտյուդ՝ ՆԵՄՐՈՒԹԻ*
*Չորրորդ էջը՝ նկ. Վ. ԿԱԺՈՅԱՆԻ*





Խմբագիր՝ [illegible]ՅԱՆ Վ.

*Խմբագրական կոլեգիա՝* ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԽԱՉԱՏՐՅԱՆ Հ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ., ՀԱԿՀԻՆՅԱՆ Ա., ՄՅԵՖԱՆՅԱՆ Ս., ՕՀԱՆՅԱՆ Ս.

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Маркса 21.
*Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, Հեռախոսներ՝ 2-44-83, 2-59-06*

*ՎՖ 11166։ Պատվեր 561։ Տիրաժ 500։ Տպագրական 2¼ մամուլ։ Ստորագրված է տպագրության 15/VI 1955 թ.։*

*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության Գլխավոր վարչության № 1 տպարան, Երևան, Ալավերդյանի փող. № 65։*

# ՄԵՐ ՕՐԱՑՈՒՅՑԸ

## ԼԵԳԵՆԴԱՐ ՀԵՐՈՍԸ

Քաղաքացիական պատերազմի ծանր տարիներն էին: Սովետական Ուկրաինայի մայրաքաղաքը գտնվում էր թշնամու ձեռքում: Քաղաքացիական պատերազմի հերոս Նիկոլայ Ալեքսանդրովիչ Շչորսը Կոմունիստական պարտիայի Կենտկոմի հանձնարարությամբ պետք է գլխավորեր Կիևի ազատագրման համար մղվող մարտերը, որոնք սկսվեցին 1919 թվականի օգոստոսի առաջին օրերից: Շչորսը որպես փորձված զորավար կարողացավ հմտորեն կազմակերպել քաղաքի ազատագրումը: Օգոստոսի



վեցին նրա գլխավորած զորամասերը ջախջախեցին պետլյուրովականներին և մտան Կիև: Շչորսը նշանակվեց քաղաքի պարետ և պարգևատրվեց ոսկե զենքով:

Նիկոլայ Ալեքսանդրովիչ Շչորսը ծնվել է 1895 թվականի հունիսի վեցին Սնովսկ բնակավայրում (այժմ՝ Շչորս): Նրա հայրը աշխատում էր շոգեքարշային դեպոյում որպես մեքենավար: Նիկոլայը 17 տարեկան էր, երբ ավարտեց Կիևի ռազմա-ֆելդշերական դպրոցը: Քաղաքացիական պատերազմի ժամանակ ռազմաճակատում նա վիրավորվում է և ծանր հիվանդանում: Դեռ պատերազմից առաջ Շչորսը կապ է հաստատում բոլշևիկների հետ և ընդունվում պարտիայի շարքերը: 1917 թվականին, երբ նա վերադառնում է Սնովսկ, Սեմյոնովկա գյուղում կազմակերպում է պարտիզանական ջոկատ: Շուտով նա մեկնում է Մոսկվա և լինում Լենինի մոտ: Լենինի հանձնարարությամբ 1918 թվականի օգոստոսին Շչորսը կազմակերպում է առաջին ուկրաինական սովետական գունդը: 1919 թվականի օգոստոսի 30-ին մղված ահեղ մարտերից մեկում Շչորսը ընկավ հերոսի մահով: Նա իր ամբողջ կյանքում հարազատ մնաց ռևոլյուցիայի գործին: Ամենուրեք թե՛ ցարիզմի տարիներին, թե՛ ընդհատակում, և թե՛ պարտիական ու ռազմական աշխատանքում նա միշտ եղել է ռևոլյուցիայի կարգապահ զինվորը, խիզախ, ազնիվ մարդ, մինչև վերջը նվիրված մեծ Լենինի ստեղծած պարտիայի անմահ գործին:

Այս տարի լրացավ Ն. Ա. Շչորսի ծննդյան 60 տարին:

## ՀԱՆՃԱՐԵՂ ԴԵՐԱՍԱՆԸ

1883 թվականի հունվարն էր: Մոսկվայի կենտրոնում գտնվող մեծ խանութներից մեկի ցուցափեղկում ուրիշ դերասանների նկարների կողքին դրված էր մեծացրած մի դիմանկար: Անցորդները զարմանքով էին նայում այդ անծանոթ դեմքին, կարդում նրա անունը և հարցնում՝ ո՞վ է այս մարդը:

Անցան օրեր... Պուշկինյան թատրոնում բեմադրվում էր Լերմոնտովի «Դիմակահանդես» դրաման: Երբ ներկայացման վերջում խելագարված Արբենինը պատառոտեց շապիկն ու հարձակվեց անհայտի վրա, առաջին շարքում նստած մի կին գոռալով դուրս փախավ... Հասարակությունը հիացած էր արտիստի խաղով: Նա իր շնորհակալությունը հայտնեց՝ տասներեք անգամ նրան բեմ հրավիրելով: Ներկայացումից անմիջապես հետո ռուսական բեմի տաղանդավոր վարպետ Երմոլովան ասաց. «Այսուհետև Պիսարևին (Արբենինի դերը կատարող հայտնի արտիստ), խորհուրդ չենք տա Արբենինի դերը կատարել»: Մոսկվայի թատերասեր հասարակությունն արդեն լավ գիտեր, որ խանութի ցուցափեղկում դրված նկարը հանճարեղ դերասան Պետրոս Ադամյանի դիմանկարն էր:

Մոսկվայի թերթերը Ադամյանի համբավը հասցրել էին երկրի ամենահեռավոր վայրերը: Ամենուրեք անհամբեր սպասում էին նրա ներկայացումներին: Երբ Պետերբուրգում նա առաջին անգամ հանդես եկավ Համլետի դերում, խոր տպավորություն թողեց այնտեղի հասարակության վրա: Թերթերը գրում էին. «...Ադամյանը Համլետի խոսքերի և գործողության մեջ դրել է շատ ավելի կիրք, կրակ, քան Ռոսսին և աշխարհահռչակ Սալվինին... Առաջին անգամն է, որ ռուսական բեմի վրա այդպիսի բան ենք տեսնում»:

Ադամյանն ամեն տեղ նույն ընդունելությունն էր գտնում: Ինչպես ինքն էր պատկերավոր ասում՝ ներկայացման օրերը դահլիճը լիքն էր լինում նռան պես:

Պետրոս Ադամյանը նաև գրել է բանաստեղծություններ, կատարել թարգմանություններ: Բանաստեղծությունների զգալի մասը գրված են նրա ներկայացրած պիեսների այս



կամ այն հատվածի ազդեցության տակ: Ադամյանը միաժամանակ շատ է սիրել նկարչությամբ զբաղվել: Նա նկարել է բազմաթիվ նկարներ՝ պորտրետներ, պեյզաժներ և այլն:

Այս տարի հունիսի տասնինգին լրացավ Պետրոս Ադամյանի մահվան 64 տարին:

